# ՆՈՐԻՑ ԵԿԱՐ

Ն. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

*Նորից եկար, կանաչ գարո՛ւն,*
*Ծիծաղելով եկար,*
*Ողջույնի խոսք ասաց առուն,*
*Դու ծաղկաշոր հագար։*

*Նոր առվակներ կարկաչեցին*
*Քո գրկի մեջ ուրախ,*
*Քո գրկի մեջ կանաչեցին*
*Դաշտ, այգի ու պուրակ։*

*Գարուն, միայն ծաղկունքով չես*
*Դու զարդարել այգին,*
*Այսօր սիրով դուրս ես կանչել*
*Ջորս տարեկան Հայկին։*

*Նրա համար բերել ես դու*
*Տաք ու պայծառ օրեր,*
*Սիրուն թիթեռ, երգող արտույտ,*
*Եվ ժպտացող արև։*

*Կարծես երկար եք սպասել,*
*Ու հանդիպել ահա,*
*Որ իրար հետ անուշ խոսեք,*
*Եվ իրար հետ խաղաք,*

*Որ երբ լինի այրող ամառ,*
*Դու աշխարհից գնաս,*
*Նա գարնան պես լինի կայտառ՝*
*Դու նրա մեջ մնաս։*

*Գարո՛ւն, մանուկ ես դու դալար,*
*Դու խաղընկեր Հայկին,*
*Նրա կանչով աշխարհ եկար,*
*Նա քո կանչով՝ այգի։*




*Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 3

ՄԱՐՏ

1954 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 26-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

**ԻՈՍԻՖ ՎԻՍՍԱՐԻՈՆՈՎԻՉ ՍՏԱԼԻՆ**

# Ի. Վ. ՍՏԱԼԻՆ

1953 թվականի մարտի 5-ին դադարեց բարախելուց մեծ Լենինի աշակերտ և հավատարիմ զինակից, Կոմունիստական պարտիայի և ժողովրդի արժանավոր զավակ Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի սիրտը:

Ստալինը դեռ պատանեկական տարիներից խոր ատելությամբ է լցվում դեպի տիրող կարգերը և երդվում է իր ողջ ուժերը նվիրել աշխատավոր ժողովրդի ազատագրության պայքարի գործին:

Պատանի Ստալինը շատ էր կարդում սկզբում գեղարվեստական, իսկ սեմինարիայի տարիներին քաղաքական գրականություն: Կարդում է Մարքսի, Էնգելսի մի շարք աշխատություններ, որոնց մեջ նա գտնում է իրեն հուզող հարցերի պատասխանը:

Մարքսիզմի պրոպագանդայի համար Ստալինը հեռացվում է սեմինարիայից: Նա բնև դիպլոմ չի ստանում, բայց կյանք է մտնում հաստատուն գիտելիքներով, որպես համոզված ռևոլյուցիոներ: Լենինի հետ ունեցած նամակագրական կապը և անձնական հանդիպումը Ստալինի համար ունենում է վճռական նշանակություն, նա ավելի պարզորոշ է պատկերացնում իր կյանքի ուղին:

Ստալինը Անդրկովկասում հանդիսանում է լենինյան գաղափարների ջերմ պաշտպանը և պրոպագանդիստը: Լենինյան գաղափարներով զինված, նա իր շուրջն է համախմբում Անդրկովկասյան բոլշևիկներին և նրանց պայքարի է կոչում ցարիզմի դեմ: Ստալինը երկար տարիներ ռևոլյուցիոն աշխատանք է տանում Թբիլիսիում, Բաթումիում, Բաքվում և այնուհետև Պետերբուրգում՝ ամենուրեք հանդիսանալով լենինյան իդեաների համար մղվող պայքարի անվեհեր մարտիկ: Նա բազմաթիվ անգամ ենթարկվում է ոստիկանության հալածանքներին, ձերբակալվում, ուղարկվում աքսոր: Բայց ո՛չ ցարիզմի աքսորների դաժան տարիները և ո՛չ էլ ոստիկանության հալածանքները չեն կարողանում ընկճել Ստալինի երկաթյա կամքը:

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի օրերին Լենինի հետ միասին Ստալինը բանվորներին և գյուղացիներին պայքարի էր կոչում կապիտալիստների և կալվածատերերի իշխանության դեմ՝ հանուն ազատ ու երջանիկ սոցիալիստական կարգերի:

Քաղաքացիական պատերազմի տարիներին Կոմունիստական պարտիան և անձամբ մեծ Լենինը Ստալինին այնտեղ էին ուղարկում, որտեղ վտանգ էր սպառնում մեր Հայրենիքին:

1922 թվականի ապրիլին պարտիայի Կենտրոնական Կոմիտեի պլենումը Լենինի առաջարկով Ստալինին ընտրում է Կենտկոմի գլխավոր քարտուղար, ուր նա անփոփոխ կերպով մնում է մինչև կյանքի վերջը:

Լենինի մահից հետո պարտիայի և ժողովրդի թշնամիները փորձում էին մեր երկիրը շեղել իր ճանապարհից և վերականգնել կապիտալիստների իշխանությունը: Կոմունիստական պարտիան Լենինի գործի մեծ շարունակող Ի. Վ. Ստալինի գլխավորած Կենտրոնական Կոմիտեի ղեկավարությամբ ջախջախեց ժողովրդի և պարտիայի թշնամիներին՝ պաշտպանեց լենինիզմը և վերցրեց մեր երկրում սոցիալիզմի կառուցման վճռական կուրս:

Ընդհանրացնելով ՍՍՌՄ-ում սոցիալիզմի կառուցման հարուստ փորձը Ի. Վ. Ստալինը ստեղծագործաբար զարգացրեց մարքսիստական-լենինյան ուսմունքը և առաջ տարավ իր իմաստուն ուսուցչի և ժողովուրդների առաջնորդի մեծ գործը:

Հայրենական Մեծ պատերազմի տարիներին Ստալինը ամեն օր, ամեն ժամ սովետական ժողովրդի հետ էր, նրան պայքարի էր կոչում մեր Հայրենիքի ազատության և անկախության համար: Շնորհիվ Կոմունիստական պարտիայի իմաստուն քաղաքականության և ստալինյան ղեկավարության՝ մեր երկիրը փրկվեց ֆաշիստական ստրկացումից:

Ստալինը ուներ բյուրեղյա պարզություն, երկաթյա կամք, մինչև վերջ նվիրված էր մեծ Լենինի գործին, պարտիային, ջերմորեն սիրում և հավատում էր ժողովրդին: Նա համեստ էր, զգայուն դեպի մարդիկ և անխնա դեպի թշնամիները: Ստալինը իր ամբողջ կյանքը, մինչև վերջին րոպեն նվիրեց աշխատավոր մարդկության ազատագրության գործին:

Մեր փառապանծ Կոմունիստական պարտիան հերոսաբար առաջ է տանում Լենինի, Ստալինի հաղթական դրոշը: Սովետական հերոս ժողովուրդը վստահորեն ընթանում է դեպի կոմունիզմ, նրա սրտում միշտ վառ կմնա հանճարեղ Լենինի աշակերտ և նրա գործի շարունակող մեծ Ստալինի պայծառ կերպարը:

*Ս. ՄԻՐԶՈՅԱՆ*

# Քսանհինգ տարի

Գարնանային ուրախություն էր տիրում ամենուրեք: Ով մտնում էր մանկապարտեզները ու դպրոցները, երեխաների ձեռքին տեսնում էր մի փոքրիկ գրքույկ, որի վրա նկարված էր ալ դրոշը վեր պարզած մի տղա, իսկ մի կողմում փայտե ձին հեծած ու գլորան քշող երեխաներ: Այդ գրքույկը «Հոկտեմբերիկ» ամսագիրն էր, որի առաջին համարը լույս տեսավ 1929 թվականի մարտ ամսին:

Ամսագիրը մի թանկագին պարգև էր Հայաստանի մանուկներին. իսկ պարգևողը Սովետական կառավարությունն էր ու Կոմունիստական պարտիան:

Փոքրիկ էր ամսագիրն այն ժամանակ՝ ընդամենը տասնվեց էջ. բայց գարնան առաջին ծաղկի նման դուրեկան:

Ուրախ էին երեխաները, որ հենց առաջին համարում տպագրվել էր սիրելի ԽնկոԱպոր «Ժամանակը բոլորվի, Ձմեռ պապին գլորվի» ոտանավորը, Սիմակի «Ծիտիկները եկել են» պատմվածքը, Հ. Աղաբաբի «Իմ բալիկը», Հ. Հայրապետյանի «Ձնծաղիկը» և ուրիշ բանաստեղծություններ ու նկարներ:

Լույս տեսավ ամսագրի առաջին համարը և արագորեն տարածվեց: Դրանից հետո ամեն ամիս երեխաներն անհամբեր սպասում էին «Հոկտեմբերիկի» նոր համարին:

Սիմակն ու Հայրապետյանը նյութեր ու նկարներ էին հավաքում, խմբագրում, նկարազարդել տալիս և տանում տպարան: Նրանց այն ժամանակ օգնում էր նկարիչ Հովհաննիսյան Շավարշը:

Այդ տարվա չորրորդ համարում արդեն հանդես եկավ նաև Ստեփան Զորյանը «Վերկի արկածները» պատմվածքով: Շոգեքարշի և չին մանուկների մասին գրեց Արաքսը, իսկ հայտնի կոմպոզիտոր Ռոմանոս Մելիքյանը՝ «Տիվ-տիվ» գեղեցիկ երգը:

Եվ այսպես տարեցտարի շատացան «Հոկտեմբերիկի» հեղինակները: Ամսագրի էջերը նկարներով զարդարեցին Մ. Բաղդասարյանը և Գ. Բրուտյանը:

1939 թվականին ամսագիրն ավելի բազմազան դարձավ, նկարներն ավելի լավա-



Սիրելի գրողների հետ:

ցան: Տիրաժը կրկնապատկվեց: Արդեն երևում էին նոր գրողներ ու նկարիչներ. Լ. Սաղաթելյանը՝ «Հավատարմություն» արագիլների կյանքից հետաքրքիր պատմվածքով, Ն. Զարյանը և Մ. Խերանյանն իրենց ընդուն ոտանավորներով: Այդ տարի ամսագրում տպագրվում է երիտասարդ բանաստեղծ Հ. Շիրազի «Զղջիկը» պոեմը և մյուսների գրվածքները, կոմպոզիտոր Ալատ Մանուկյանի երգը Սասունցի Դավթի մասին, որի տեքստը գրել էր Ս. Տարոնցին:

Հետևյալ տարին ամսագրի շուրջն են հավաքվում մեծ թվով հեղինակներ: Հանդես է գալիս մեծ բանաստեղծ Ավ. Իսահակյանը: Բանաստեղծ Աղասի Վշտունին ամսագիր է

# Քսանհինգ տարի

մտնում իր «Լուսաբաց» գողտրիկ ոտանավորով, Հռ. Պողոսյանն իր թարգմանություններով ու ոտանավորներով, Պ. Միքայելյանը, Սարմենը, Ռ. Ղարիբյանը: Նույն եռանդով շարունակում է աշխատակցել Արազին, որի «Ազատարար Վոլոդյան» տպագրվում է ամսագրի 5-րդ համարում: Բնագետ Ռ. Գաբրիելյանը հրապարակում է մի քանի հետաքրքիր պատմվածքներ և ակնարկներ կենդանիների կյանքից, Վ. Անանյանը՝ որսորդական պատմվածքներ:

Հաղթանակով վերջացավ Հայրենական Մեծ պատերազմը: Եվ դեռ մի քանի ամիս չանցած, Հայաստանի մանուկներին նորից գարնանային ուրախություն բերեց «Հոկտեմբերիկ» ամսագիրը: Չվող թռչունների նման եկան հավաքվեցին ծերունազարդ ու երիտասարդ գրողներն ու նկարիչները, գիտնականներն ու արվեստագետները: Թարմ շունչ մտցրին ամսագրի էջերում Բ. Սեյրանյանը, Ար. Օհանյանը, Հ. Շիրազը, Աղավնին, Խ. Գյուլնազարյանը, Ս. Հարությունյանը: Առաջին անգամ հանդես եկան՝ Գ. Էմինը, Ս. Կապուտիկյանը և շատ ուրիշ գրողներ ու գիտնականներ:

Նկարիչների շարքին միացավ անվանի ու երիտասարդ տաղանդավոր նկարիչների մի ամբողջ ջոկատ:

1950 թվականի նոյեմբերից ամսագիրը վերանվանվեց և դարձավ «Պիոներ»: Ամսագրի շուրջը համախմբված հեղինակները շարունակեցին աշխատել չթուլացող թափով: Պատմվածքների և այլ գրվածքների հետ միասին տպագրվեցին ակնարկներ Հայաստանի պիոներների ու դպրոցականների կյանքից, եղբայրական ռեսպուբլիկաների, Չինաստանի և մյուս բարեկամ երկրների կյանքից: Ամսագրում սկսեցին երևալ աշխարհի առաջավոր գրողների գործեր:

Այդ տարվա մի քանի համարում երեխաները հաճույքով կարդում էին գրողների և գիտնականների՝ Թ. Թադևոսյանի և ուրիշների գործերը:

Նկարիչների ջոկատն էլ համալրվեց նոր շնորհալի ուժերով:

***

Այն օրից, երբ ամսագիրն ընդունվեց պիոներական շարքերը, անցել է մոտ հինգ տարի: Լույս է տեսել և հազարավոր պիոներների ու դպրոցականների շրջանում տարածվել է ամսագիրը: Ավելացել է ընթերցողների թիվը, կատարելագործվել է գրողների ու նկարիչների արվեստը:

Երիտասարդ գիտնականների, գրողների և մյուսների նոր հոսանքը աշխուժացրել է ամսագրի աշխատանքը: Խաղաղության և ժողովուրդների բարեկամության ոգեշունչ բանաստեղծություններ են նվիրել գրողները:



# Քսանհինգ տարի

Պատանի թղթակիցները պատմել են ծառատունկի, նոր սարքեր պատրաստելու և շատ ուրիշ հետաքրքիր պիոներական գործերի մասին։

Երկար է Հայաստանի պիոներների ու դպրոցականների սիրելի ամսագրի պատմությունը։ Ինչքա՜ն մեծ գործ են արել մեր հեղինակները մանուկների համար վերջին տարիներս։ Ամսագրի էջերի զարդն է կազմում Ն. Զարյանի «Խաղաղության աղավնին» բանաստեղծությունը, որը դեռ երկար ժամանակ անգիր կանեն ու կարտասանեն հազարավոր ընթերցողներ։

Իսկ որքա՜ն ուրախալի է, երբ դեռևս ութերորդ դասարանի աշակերտ Պերճ Զեյթունցյանը ամսագրի խմբագրությունն է բերում իր պատմվածքները։ Մի քանի պիոներներ, հաճախ տպագրության են ուղարկում իրենց ջերմ շնչով գրված ոտանավորները։



Քսանհինգ տարի է անցել այն օրից, երբ գարնան արևի ջերմ շողերի տակ բողբոջեց և առաջին ծաղիկը տվեց մեր մանուկների ամսագիրը։ Այն օրերին ծնված երեխաներն այժմ հասուն մարդիկ են դարձել, հազար ու մի տեսակ մասնագիտության վարպետներ։ Նրանց զավակներն են հիմա կարդում մեր ամսագիրը, իսկ ծնողները հիշելով 1929 թվականի մարտ ամիսը, ժպտում են։ Նրանք տեսնում են, թե որքա՜ն է աճել, գեղեցկացել ու բովանդակալից դարձել մանուկների սիրելին։ Ընդամենը մեկ մամուլանոց գրքույկն այժմ երեսունվեց էջ ծավալ ունի։ Մի քանի հեղինակների փոխարեն, հիմա տասնյակ գրողներ, նկարիչներ, կոմպոզիտորներ, լուսանկարիչներ, գիտնականներ, պիոներական փորձված աշխատողներ ու պատանի ստեղծագործողներ են մասնակցում ամսագրի ստեղծման գործին։ Ամսագիրն ունի տասներկու բաժին, իսկ շապիկի յուրաքանչյուր ամիս փոխվող նկարը երեխաներին գրավում է այնպես, ինչպես ծաղիկը ժրաջան մեղվին։

Հիմա նորից գարուն է։ Շողում է վառ արևը, կանաչում են դաշտերը, կարկաչում են գետակները, վերադառնում են թռչունները, դաշտերում ու հովիտներում եռում է աշխատանքը, քաղաքներում ու գյուղերում հնչում են մուրճերի զարկերը, դպրոցներում ուսումնական տարին մոտենում է իր վերջին։ Ահա լույս է տեսնում ամսագրի մարտի համարը և տասնյակ հազարավոր մանուկ ու պատանի ընթերցողներ իրենց խորին շնորհակալությունն են հայտնում մեր Կոմունիստական պարտիային ու Սովետական կառավարությանը ամսագրի և շատ ու շատ ուրիշ բարիքների համար, երջանիկ մանկության համար։

Վ. ՏԱԼՅԱՆ






ՀԵՆՐԻԿ ԹՈՒՄԱՆՅԱՆ

Նկ. Մ. ՏԻՐԱՏՈՒՐՅԱՆԻ

Ահա նորից գարուն բացվեց,
Հողը քնից է արթնացել,
Ջերմ շողերը արեգակի
Ողողել են դաշտ ու այգի:
Դալար տունկեր է հավաքել
Այգեպանի տղան, եկել,
Ուրախ, ուրախ ծառ է տնկում
Նոր բողբոջած իրենց այգում:
Փոքրիկ ծառը երբ մեծանա,
Ճյուղեր կտա ու կամարանա

Պարարտ հողում, արևի տակ,
Ջուր կխմի նա սառնորակ:
Նա էլ մի օր պիտի բացվի,
Ծաղիկների բույրով լցվի,
Խնձորներ տա կարմրաթուշիկ՝
Խոշոր, հյութեղ և անուշիկ:
Փոքրիկ տղան իրենց այգում
Հողն է փորում, ծառ է տնկում,
Ծառ է տնկում, որ մեծանա,
Խնձորի մեկն հազար դառնա:

# ԳՈՒՐԻԿԻ ԱՂԱՎՆԻՆԵՐԸ

Դ. ԴԵՄԻՐՃՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Գուրիկը մի զույգ աղավնի էր ձեռք բերել: Իրենց գյուղի մեծահասակներից սովորել էր աղավնի պահելու ձևերը, սիրով խնամում, հոգ էր տանում դրանց: Բույն էր շինել բարձր սյան վրա, ներքևը ջրաման էր դրել. կուտ էր շաղ տալիս գետնին, ինքն էլ հսկում, որ աղավնիները ուտելիս կատուները չհարձակվեն նրանց վրա: Իսկ երբ նա դպրոց էր գնում, աղավնիներին հսկում էր մոտիկ ծառից կապած շունը:

Աղավնիները երկուսն էին: Մեկը դեղնակարմիր էր, կուրծքը՝ սպիտակ, ոտները՝ փրչիկ, իսկ մյուսը ամբողջովին սպիտակ էր. կարծես ձյունից շինած լիներ: Վաղ առավոտից Գուրիկը լսում էր.

— Ղո՞ւմ, ղո՞ւմ, ղո՞ւմ:

Դա փրչիկ աղավնին էր, անունն էլ հենց Փրչիկ: Շատ քաղցր էր նրա ձայնը: Հենց որ զարթնում էր Գուրիկը այդ ձայնի վրա, վեր էր թռչում անկողնից ու արագ հագնվելով դուրս էր վազում, որ նայի իր սիրունիկներին, խոսի հետները, կերակրի, ջուր տա:

Պետք է ասել, որ Գուրիկը շատ էր տարվել իր աղավնիներով: Դպրոց գնալուց առաջ կերակրում էր, զբաղվում նրանցով. տուն էր վերադառնում թե չէ՝ էլի նույնը: Կամաց-կամաց սովորեց նրանց բռնել, ձեռքով թռցնել վեր: Թռչում էին նրանք, ճախրում, պտտվում տան վրա, հետո թևին տալով, գյուղի մյուս տների վրայով գնում կորչում էին: Գուրիկը բարձրանում էր կտուրը, բարձր սուլում: Սուլոցի վրա աղավնիները վերադառնում, իջնում էին բակում կամ բնի վրա:

Գուրիկը աղավնիներին շատ սիրեց և խելքը, միտքը տվեց նրանց: Սկսեց քիչ պարապել դասերով, սովորելուց թուլանալ, ետ մնալ:

Դա արդեն լավ բան չէր։ Եվ նրա հայրը, կոլտնտեսական Գրիգորը իր կնոջն ասաց.

— Էս աղավնիները խանգարում են Գուրիկին։ Ես դրանց կվերջացնեմ։

— Ի՞նչ պիտի անես,— վախեցավ կինը, — չինի՞ ուզում ես մորթել։ Վա՜յ, էդպես բան չանես, մեղք են։

— Բա ես չե՞մ իմանում, որ մեղք են,— ասաց Գրիգորը.— կտանեմ Սևան, կծախեմ կամ հենց կտամ մեկ ուրիշին, թող պահեն։

Ու մի առավոտ վաղ, Գուրիկը դեռ չարթնացած, աղավնիներին բռնեց, դրեց մի քթոցի մեջ, ձի նստեց և գնաց Սևան, որ իրենց գյուղից քառասուն կիլոմետր հեռու էր։ Նա այնտեղ ուրիշ գործ էլ ուներ։

Գուրիկի մայրը տխրեց։ Գիտեր, որ տղան շատ պիտի վշտանա. բայց ի՞նչ աներ։ Նա էլ էր տեսնում, որ աղավնիներով շատ զբաղվելը Գուրիկին ետ էր գցում դասերից։

Երբ Գուրիկը զարթնեց, ականջները սրեց, որ լսի իր աղավնիների քաղցր «ղում-ղումը»։ Ականջ դրեց, սպասեց՝ ձայն չեկավ։ Վեր թռավ անկողնից.

— Վա՜յ, ո՞ւր են աղավնիները։

Մեկ մտածեց, որ երևի թռել են անտառ։ Հագնվեց, դուրս եկավ բակը։ Նայեց՝ բույնը դատարկ էր։ Բարձրացավ կտուրը, չորս կողմ նայեց... Թռչում էին աղավնիներ, բայց նրանք գնում նստում էին ուրիշների բներում։

— Մայրիկ, ո՞ւր են աղավնիները,— հարցրեց Գուրիկը անհանգիստ։

— Գնացել են,— պատասխանեց մայրը, գնա, լվացվիր, եկ թեյ խմիր։

—Չէ՜, ինչ թեյ... աղավնինե՜րս չկան...

— Գնա դպրոց,— ասաց մայրը,— աղավնիները թռել են հեռու։ Կարող են կորչել։ Դու դասերիդ մտիկ։

— Վա՜յ, ինչ ես ասում։ Ես ո՞նց կորցնեմ իմ աղավնիներին։

Գուրիկը շատ անհանգստացավ, թեյ չըխմեց, հաց էլ չվերցրեց. գլուխը կախ, տըխուր գնաց դպրոց։ Դասերը լավ պատասխանեց. այդ օրը լավ էր սովորել։ Բայց ուշքն ու միտքը աղավնիների կողմն էր։ Դասերը վերջացրեց թե չէ, վազեց դեպի տուն։ Նա մտածում էր, որ գոնե մինչև հիմա աղավնիները վերադարձած լինեն անպատճառ։

Հասավ տուն, նայեց բնին՝ աղավնիները չկան։ Նստեց տան դռանը դրած քարին, սպասեց։ Չէ, չկան։ Լաց եղավ.

— Ախր ո՞ւր կորավ իմ Փրչիկը, ո՞ւր է իմ Լուսիկը։

Մայրը շատ զղջաց, որ համաձայնվեց ամուսնու հետ՝ աղավնիները տանելու։

Գուրիկն ամբողջ օրը բան չկերավ։ Մայրը մխիթարում էր։

— Ոչինչ, Գուրի՛կ ջան, ուրիշները կառնենք, լաց մի՛ լինի։

— Ի՞նչ անեմ ուրիշները։ Ես իմ Փրչիկին եմ ուզում, իմ Լուսիկին։

Գուրիկը գնաց ուրիշ աղավնի պահողների մոտ, որ տեսնի՝ հո նրանց աղավնիներին չեն խառնվել իրենները։ Նայում է նրանց



Գուրիկը շատ էր տարվել իր աղավնիներով։

աղավնիներին՝ չկան, բան էլ չի ասում։ Նայում է, նայում, սիրտը կտոր-կտոր է լինում։

Գրիգորը հետևյալ օրը վերադարձավ։

— Հը՞,— ասաց կնոջը,— ի՞նչ է անում Գուրիկը։

— Լաց է լինում։

— Լավ չէ, բայց ոչինչ, կսովորի։

— Հույս չունեմ թե սովորի։ Մի բան պիտի անել։

— Ի՞նչ պիտի անել։ Աղավնիները Սևանում տվի մի գյուղացու. նա էլ ուրիշ գյուղից էր, տարավ իր տունը։

— Բա էսպես բան կանե՞ն, որ մենք արինք, ա՛յ մարդ:

— Էլ ի՞նչ, հիմի ուշ է, աղավնիները կորան գնացին:

Գուրիկը նստել էր բնի տակ, գլուխը դրել ծնկին՝ տխրում էր: Կանչում էին ներս՝ չէր գալիս: Ճաշ չկերավ: Մայրը մոտ գնաց, գրկեց Գուրիկին և գլուխը շոյեց.

— Ախր դու շատ էիր զբաղվում աղավնիներով, դասերդ լավ չէիր սովորում:

— Է՜, լավ էլ կսովորեի, գերազանցիկ էլ կդառնայի, միայն թե չկորչեին աղավնիները:

— Դե լավ,— ասաց հայրը,— եթե լավ սովորես ու գերազանցիկ դառնաս, քեզ համար երկու աղավնի կբերեմ:

— Հա՛, հա՛, Գուրիկ ջան, մի՛ տխրիր: Լավ սովորիր, հայրիկն էլ քեզ համար նոր աղավնիներ թող բերի:

Գուրիկը մի քիչ համոզվեց. բայց տխուր էր: Ախր շատ էր սիրում իր Փրչիկին ու Լուսիկին:

— Ա՜խ իմ Փրչիկը, ա՜խ իմ Լուսիկը,— ասում էր, ու աչքերը լցվում էին:

Գիշերը վատ քնեց Գուրիկը: Առավոտն էլ շուտ զարթնեց, պառկեց մեջքի վրա և սկսեց հիշել իր աղավնիներին, աչքերը թրջել:

Չէր ուզում դպրոց գնալ՝ բայց հայրը ձեռը բռնեց, տարավ: Դասերից հետո եկավ տուն և իսկույն գնաց դաշտը, որ ման գա ու մոռանա աղավնիներին: Եկավ տուն, մի փոքր նայեց գրքերին, հետո տխուր նստեց բնի տակ, օրը մթնեց:

Վերջապես համոզվեց, որ աղավնիները անդարձ կորան ու սկսեց հանգստանալ:

Առավոտյան զարթնեց վաղ. այն ժամին, երբ նա սովորաբար զարթնում էր, որ ականջ դնի աղավնիների երգին: Նա տխրությամբ հառաչեց, երբ ձայն չլսեց: Կրկին քնեց:

Մեկ էլ կես քուն, կես արթուն Գուրիկը լսեց.

— Ղո՜ւմ, ղո՜ւմ, ղո՜ւմ:

Հը՞, սա՞ ինչ բան է: Ականջ դրեց: Ի՞նչ



- Ախր դու շատ էիր զբաղվում աղավնիներով, դասերդ լավ չէիր սովորում...

բան պիտի լինի, պարզ, շատ պարզ լըս-վում է.

— Ղո՜ւմ, ղո՜ւմ, ղո՜ւմ։

— Վա՜յ, վա՜յ,— վեր թռավ Գուրիկը և շապկանց վազեց դուրս։

Վազեց դուրս և ի՞նչ տեսնի՝ իր Լուսի՜կը, իր Փրչի՜կը։

— Էդ ի՞նչ է, Գուրի՛կ,— զարթնեց մայրը և հասկանալով, թե բանն ինչումն է, ձայն տվեց Գրիգորին.— վեր կաց, ա՜յ մարդ, աղավնիները եկե՞լ են։

— Ո՞նց թե,— վեր թռավ Գրիգորը։

Դուրս վազեցին։ Թե ինչ էր անում Գուրիկը, էլ պատմելու բան չի։ Վազվզում էր, փաթաթվում սյանը, համբուրում, ուրախ աչքերով մտիկ տալիս վերև, իր աղավնիներին։

— Հայրի՜կ, մայրի՜կ,— ձայն տվեց Գուրիկն ու ընկավ մոր գիրկը։ Ծիծաղում էր, մորը շոյում։

— Էդ ո՞նց եղավ, հայրի՛կ, ո՞նց եղավ, ո՞րտեղ էին որ եկան,— աչքերն արցունքով լի դարձավ հորը։

Հայրը գլուխը թափ տվեց։

— Ախր չես իմանում, շա՜տ հեռու էին գնացել աղավնիներդ, ուրիշ մարդկանց ձեռն էին ընկել. բայց տես՝ էլի փախել, եկել են տուն։

— Բա ո՞նց գտան ճամփան։

— Դրանք աղավնիներ են, կգտնե՜ն։ Է՜, տունը քաշում է, տունը քա՜ղցր է. ինչպես որ մեզ համար քաղցր է Հայրենիքը, Գուրի՜կ ջան։



# ՄԻ ԳՐՔԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

Խ. ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ

Փայտե սյունին ամրացրած ճրագթաթի վրա ձեթի ճրագն այրվում էր ծխալով։ Խըր-ճիթի գմբեթաձև առաստաղի կիսաբաց երդիկից մի հատիկ արծաթափայլ աստղ էր երևում։ Դրսում լուսնկա էր։ Գետնին տարածված ձյունը փայլում էր կապտաշող ապակու պես, իսկ ծառերի ճյուղերից սառույցի նետանման լուլաներ էին կախված։

Երդիկի տակ փռված խսիրի վրա դրված էր մի կարճառոտ սեղան։ Սեղանի վրա մագաղաթե մի բաց գիրք կար։ Սեղանի ծայրին հախճապակե ներկամաններն էին և կավե գրչամանը, որի մեջ մի տասնյակ փետուրե գրիչներ էին երևում։

Սեղանի առաջ չոքել էր մի նիհար ծերունի։ Նրա սպիտակ մորուքն իջնում էր մինչև կուրծքը։ Թույլ լույսից և լարվածությունից աչքերն արցունքոտ էին։ Ծերունին ծնկների տակ երկու բարձիկ էր դրել։ Երևում էր, որ հոգնել է և մրսել։ Նա ձեռքի գրիչը մաքրեց ինչ-որ լաթով ու խնամքով դրեց գրչամանի մեջ, ապա դանդաղությամբ ուղղեց կորացած մեջքը, փչեց սառած մատներին, և տնքաց.

— Օ՜ֆ...

Այդ ծերունին գիրք էր գրում։

***

Գյուղում անսովոր իրարանցում էր։ Մարդիկ հապճեպով հեռանում էին։ Կանայք լալիս էին, ծերունիները հառաչում, պատանիներն ու երիտասարդ տղամարդիկ հուզված էին, ջղային։

— Տախեցին անիրավները...

— Հիմա օտարների հետ կգան մեզ կոտորելու...

Ամբողջ երկրի ժողովուրդն էր հուզված։

Շինականն ապստամբել էր հարկերի և կողոպուտի դեմ։

— Ժողովո՛ւրդ,— կալատեղում հավաքված գյուղացիներին ասում էր մի բարձրահասակ ծերունի,— մինչև հիմա միայն իշխանն ու եկեղեցին էին ուզում, հիմա օտարներին էլ պիտի տանք. ժողովո՛ւրդ, ի՞նչ պիտի տանք։

— Կավե կճուճ ու խսիր,— թունոտ ծաղրով ասաց մի կին։

Եվ գյուղի ժողովուրդը սարերը բարձրացավ։

Երեկոյան, երբ հարկահանները գյուղ մտան, ոչ մի խրճիթում կրակ չկար։ Գոմերի դռները բաց էին, անասունների մսուրքները՝ դատարկ։ Այս ու այնտեղ սոված շները աղբակույտերն էին քրքրում։



Սեղանի առաջ չոքել էր մի նիհար ծերունի։

Գյուղացիների հետ դեպի սարերն էր ելնում մի թիկնեղ պատանի։ Նրա հագին միայն մի երկար շապիկ կար, որ իջնում էր մինչև բոբիկ թաթերը։ Մեջքից խոտե չվանով մի տոպրակ էր կախված։

Երբ պատանին անցնում էր ինչ-որ երկանիվ սայլի մոտով, սայլի վրա նստած մի փոքրիկ տղա մորը հարցրեց.

— Մա՛, սա ո՞վ է, մա՛։

— Սո՛ւս,— ասաց մայրը,— գրիչ Հովնանի աշակերտն է։ — Եվ պատանուն դիմելով ավելացրեց.— Արի, մի պուտ կաթ խմի, Հակո՛բ, որդի՛։

Պատանին մոտեցավ երկանիվ սայլին։ Կինը սայլից փարչ հանեց ու կավե գավաթով կաթ տվեց նրան։

***

Քարայրի անկյունում ջրի կուժ էր դրված, իսկ կենտրոնում՝ մի մեծ սալ քար։ Քարի վրա բաց գիրքն էր, ներկամաններն ու գրչամանը, իսկ քարի առաջ չոքել էր Հակոբը։ Նրա ծնկների տակ Հովնանի բարձիկներն էին, ձեռքին Հովնանի գրիչը։

Առաջին բանը, որ անվարժ ձեռքով գրեց Հակոբը մի փոքրիկ հիշատակություն էր.

«Ո՜վ ընթերցող, բարի հիշիր գրիչ Հովնանին, որ ճրագի նման վառվեց ու հանգավ»։

Հետո Հակոբն սկսեց պատմությունը.

«Եվ երկրում կռիվ էր և ավեր, իշխանները հարկերը ծախեցին օտարներին և շինականը մերկ մնաց...»

Մինչ ուշ երեկո նա մեջքը չուղղեց. գրում էր ու գրում։ Մագաղաթը խշխշում էր նրա ձեռքի տակ, իսկ տառերի միջից նրան էր նայում բարի ուսուցիչ Հովնանը։ Երեկոյան մի կին կորեկի հաց ու կավե ամանով մածուն բերեց։ Մեջքն ուղղելուց առաջ Հակոբը գրեց.

«Ո՜վ ընթերցող, բարի հիշիր որբ և այրի Մարիամին, որ անոթի էինք և նա մածուն բերեց ու կերանք»։

***

— Առավոտյան եկեղեցու առաջ կրակ կվառես՝ անօրեն գրքերն այրելու,— հրամայեց Մուշե վարդապետը եկեղեցու զանգերը քաշող կաղ Համբարձումին։

Վարդապետը գնաց։ Համբարձումը մտավ իր խրճիթը, որ եկեղեցու բակումն էր՝ նրա կաղ ոտքի նման մի կողմ թեքված։ Թե որտեղից էին բերել «անօրեն» գրքերը՝ Համ-

բարձումը չգիտեր։ Այժմ դրանք թաքված էին իր խրճիթի մի անկյունում, իսկ առավոտյան այրվելու էին ժողովրդի ներկայությամբ։

Համբարձումը ճրագը վառեց և ներսից փակեց խրճիթի դուռը։ Խսիրի վրա ծալապատիկ նստելով, նա սկսեց վախվխելով թերթել գրքերը։ Քանի թերթում էր, այնքան զարմանում էր։ «Ի՞նչն է սրանց մեջ անօրեն,— մտածում էր նա,— էստեղ գութանի երգ է, էնտեղ օտար աշխարհ ընկած մարդու պատմություն»։ Մինչև լուսաբաց գիրկապ անելով նա կարդում էր, կարդում ու ափսոսում։

Լուսադեմին նա ձեռքն առավ Հովնանի և Հակոբի գիրքը, վերնագիրը կարդաց. «Պատմություն շինականաց», և սկսեց.

«... Եվ շինականը չունի հող և հարստություն, և աշխատի ու տա եկեղեցուն և իշխանին...»

Քանի կարդում էր, այնքան նրա համար պարզ էր դառնում, թե վարդապետ Մուշեղն ինչու է այդ գրքերն անօրեն համարում...

Առավոտյան, երբ վարդապետ Մուշեղն եկավ, եկեղեցու բակում արդեն բոցկլտում էր գրքերի խարույկը։ Խարույկի շուրջն հսկայական բազմություն էր հավաքվել։ Այդտեղ էր նաև Համբարձումը երկար խանձողը ձեռքին։

— Այրեցի՞ր,—հարցրեց վարդապետը։

— Այրեցի, սրբազա՛ն,— պատասխանեց Համբարձումը ձեռքի վերջին գիրքը կրակը նետելով։

— Ապրե՛ս,— ասաց Մուշեղն և գոհ սրտով եկեղեցի մտավ։

Վարդապետ Մուշեղն այդպես էլ չիմացավ, որ «Շինականաց պատմությունը» խարույկի մեջ չէր, այլ խնամքով թաղված էր Համբարձումի խրճիթի անկյունում՝ հողի տակ։

***

Տարիներ անցան։

Իր ծուռտիկ խրճիթում մեռնում էր Համբարձումը։ Թախտի վրա, հնամաշ լաթերի մեջ փաթաթված, նրա կարճ մարմինն ավելի էր փոքրացել։ Ճակատն այրվում էր, աչքերն անսովոր փայլում, կարճ մորուքը դողում էր ծնոտի հետ, ատամները զարկվում էին իրար։

Երեկոյան Համբարձումի մոտ ոչ ոք չկար։ Խրճիթում կիսախավար էր, միայն երդիկից մի բարակ լույսի շող էր ընկնում հիվանդի թախտին։

Դուռը ճռռաց։ Հիվանդը մեծ դժվարությամբ գլուխը բարձրացրեց, այրվող աչքերը դեպի դուռը հառեց ու անուժ ընկավ բարձին։ Ներս մտավ մի տասներեքամյա տղա։

— Եկա՞ր,— տնքաց հիվանդը։

— Եկա,— պատասխանեց տղան,— ապե՛ր, ծիրան եմ բերել, կուտե՞ս։

Տղան գրպանից մի քանի հասած ծիրան հանեց ու մոտեցավ թախտին։

— Չէ,— հառաչեց Համբարձումը։

Տղան կուչ եկավ թախտի մոտ։ Լռեցին։



— Մա՛, սա ո՞վ է, մա՛։

Հանկարծ տղայի համար անսովոր ուժեղ ձայնով Համբարձումն ասաց.

— Արա՛մ, ես էս է, մեռնելու եմ, չվախենաս...

— Ապե՛ր, ի՞նչ ես ասում, ապե՛ր...

— Չէ, լսիր, ես քեզ կարդալ եմ սովորեցրել ինչքան գիտեի։ Դու լավ, ուշիմ տղա ես, խոստացիր...

— Ի՞նչ խոստանամ, ապե՛ր։

Հիվանդը մատը դեպի խրճիթի անկյունը մեկնեց․

— Էնտեղ, հողի տակ մի գիրք կա. կհանես, աչքիդ լույսի պես կպահես։ Հետո, որ մեծանաս, որդի կունենաս, կտաս որդուդ, կասես՝ թող նա էլ իր որդուն կտակի...

Երկու օր անց Համբարձումը մեռավ։ Արամը հեռացավ գյուղից։ Թե ուր անհայտացավ Համբարձումի հոգեզավակը, ոչ ոք չիմացավ։ Միայն թե ծերունու մահից հետո



Մի օր կիսավեր խրճիթներից մեկում Դոբրինսկին մի գիրք գտավ։

նրա ամայացած խրճիթը մտնողները զարմանքով նկատում էին, որ խրճիթի անկյունում, պատի տակ հողը փորված էր։

***

Դարեր անցան։

Պատերազմներից ու կոտորածներից հալածված ժողովուրդը ցրվեց աշխարհով մեկ։ Հեռավոր երկրներում հայկական փոքրիկ գաղութներ հիմնվեցին։ Այս ու այնտեղ գրագետ մարդիկ իրենց շուրջը հավաքեցին ջահել պատանիներին և սկսեցին գրել-կարդալ սովորեցնել։

Լեհաստանի մի փոքրիկ քաղաքում մի այդպիսի դպրոց էր բացել պառավ Փառանձեմը։ Նրա մոտ հավաքվող երեխաները և՛ թուղթ ունեին, և՛ գրիչ․ միայն հայերեն գիրք չկար։ Այդ փոքրիկ քաղաքը գաղթած հայերի մեջ միայն մի գիրք կար՝ ոսկերիչ Աշոտի տանը։ Փառանձեմը խոստացավ Աշոտի որդուն ձրի գրել կարդալ սովորեցնել, Աշոտն էլ գիրքը նրան տվեց։

Այդ գիրքը Հովնանի և Հակոբի գիրքն էր՝ «Պատմություն շինականաց», որ սերնդից սերունդ հասել էր Աշոտին ու նրա ընտանիքի հետ Մուշից գաղթել էր Լեհաստան։

***

1914 թվականի համաշխարհային պատերազմի ժամանակ ռուսական այն գունդը, որտեղ ծառայում էր զինվոր Իվան Դրոբինսկին, կանգնած էր Վարշավայի տակ։ Գնդում սպաները Դրոբինսկուն չէին սիրում՝ «խռովարար» զինվոր էր։

— Ինչո՞ւ ենք կռվում,— ասում էր նա իր ընկերներին,— ո՞ւմ համար, ցարի՞, իսկ ցարն ի՞նչ է տվել մեզ...

— Սո՛ւս,— զգուշացնում էին ընկերները,— ֆելդֆեբելը գալիս է։

Ֆելդֆեբելը Դրոբինսկու մոտից ֆշշալով էր անցնում։

— Էլի ժողո՞վ ես անում, բոլշևի՛կ...

Բոլշևիկ զինվոր Դրոբինսկին ցավով էր նայում լեհական քանդված գյուղերին։

— Տեսեք,— ասում էր նա,— սրանք էլ մեզ նման մարդիկ են, սրանց խրճիթներն էլ մերոնց նման ավեր են մնացել։

Այրված խրճիթների կանգուն մնացած վառարանները հարազատի նման մոտ էին նրա սրտին։ Նա շուռ էր տալիս քարերը, մոխրի մեջ կենդանության հետքեր էր որոնում...

Մի օր, կիսավեր խրճիթներից մեկում Դրոբինսկին մի գիրք գտավ։ Գիրքը ռուսերեն չէր, լեհերեն չէր, բայց ամենից տարօրինակն այն էր, որ գիրքը ձեռագիր էր։ Դրոբինսկին այդ բանը հասկացավ թերթելիս։ Տառերն անհամաչափ էին, լուսանցքներում ինչ-որ նշաններ ու զարդեր կային, իսկ թերթերը անսովոր կերպով պիրկ էին ու խշխշան, թուղթ չէր։



1940 թվականին Երևանի մատենադարանի դիրեկտորի անունով Լենինգրադից մի այսպիսի նամակ եկավ.

«Թանկագին ընկերներ.

Նամակիս հետ հատուկ ծրարով ուղարկում եմ ձեզ մի ձեռագիր գիրք, որ համաշխարհային պատերազմի ժամանակ հայրս է բերել Լեհաստանից։ Իմ ընկեր Լևոն Սըմբատյանը, որ ինձ հետ միասին սովորում է Բժշկական ինստիտուտում, ասում է, թե սա հայերեն է և գրված է դարեր առաջ։ Ես գիտեմ, որ ձեզ մոտ ձեռագրերի հսկա թանգարան կա։ Եթե այս գիրքն իսկապես արժեքավոր է, խնդրում եմ ընդունել, որպես ռուս զինվորի նվերը հայ ժողովրդին։

Կոմերիտական ողջույններով Վ. Ի. Դրոբինսկի»։

Այդ գիրքը Հովնանի և Հակոբի գիրքն էր՝ «Պատմություն շինականացը»։



# ԲՈՍՏԱՆՉԻ ԱՎԱԳԻ ԲԱՀԸ

(Անցյալից)

Ավ. ԻՍԱՀԱԿՅԱՆ

Նկ. Հ. ՍԱՆԱՍԱՐՅԱՆԻ

Լենինականի միջով, ամբողջապես քարակերտ կամարներով ծածկված, անցնում է «Գյումրվա չայ» կոչված գետակը, ուր թափվում են քաղաքի աղբյուրների ջրերը։

Այդ գետակը փոքր է, սակայն գարնան հեղեղներից և Շիրակի հյուսիսային լեռներում տեղացող հորդառատ անձրևներից վարարում է, երբեմն դուրս է գալիս հունից և գետակին մոտիկ փողոցներն ու նկուղները լցնում պղտոր ջրով ու տիղմով։

Քաղաքի հարավային կողմում, ուր գետակն ազատված է իր քարակերտ ծածկոցից, փռվում են Լենինականի ընդարձակ բոստանները՝ բանջարանոցները։

Գյումրվա ջրերը ոռոգում են բոստանները։ Եվ հեղեղները ուժով լցնում են հողը իրենց բերած ճոխ պարարտանյութով, հարուստ տիղմով, սակայն երբեմն էլ վնասում են բոստաններին, սրբում տանում ցանքերը…

Մի անգամ, շատ տարիներ առաջ, լեռներում եկած հորդ անձրևից հանկարծ լցվեց գետակը, հեղեղեց փողոցները և ջուրը ծովացավ բոստանների վրա։ Բոստանները վաղուց կանաչել էին և հասցրել որոշ տեսակի բանջարներ, որոնք արդեն շուկա էին ելել։

Երբ հեղեղն իջավ, ջրերը քաշվեցին, մյուս օրը առավոտյան բոստանչիները ցավով տեսան, թե ի՜նչ մեծ ավեր է գործել հեղեղը։ Մարգերը լցվել էին ջրով ու տիղմով, բանջարեղենները ծածկվել էին կամ ուղղակի հեղեղը սրբել ու տարել էր ցանածները։ Բոստանների հյուղակները ավերվել էին, քանդվել։

Բոստանչիները հեռու կանգնած՝ տխրությամբ նայում էին իրենց կորած աշխատանքին։ Նրանք, առհասարակ ունևոր մարդիկ չէին։ Նրանց ապրուստը բանջարեղեններից ստացած արդյունքն էր։ Հիմա նրանք պիտի մաքրեին տիղմը, ստիպված ամբողջ բոստանը կամ որոշ մասը պետք է նորից ցանեին։ Սերմ պիտի գնեին, պիտի վերաշինեին հոլիկները և գործիքներ պիտի գնեին՝ բահեր, թիակներ, բրիչներ, մարկոսներ, եթե հեղեղը տարած լիներ։ Եվ ժամանակ

պիտի անցներ՝ մինչև բոստանը նորից բոստան դառնար։

Բոստանչիներից շատերը վշտից խմել-հարբել էին և հայհոյում էին ու անիծում բնությանը և իրենց բախտը։

Գարնան պայծառ օր էր. երկինքը՝ կապույտ, արևը ուրախ փայլում էր. կարծես ոչ մի վատ բան չէր պատահել։

Շվարած, տխուր դիտող բոստանչիների միջից պոկվեց մեկը, ուստա Ավագը, տակավին երիտասարդ, առողջ մի մարդ։ Վերցրեց մի երկար ձող, հանեց չուստերը, բոբիկ ոտներով մտավ տիղմոտ հողերի մեջ։ Բոլորը հետաքրքրությամբ նայում էին, թե ինչ պիտի անի Ավագը։ Իսկ նա ձողին հենված գնում էր ոտները գրեթե մինչև ծնկները ցեխի մեջ թաղած. գնաց դեպի իր բոստանը, որ փոս տեղերում դեռ լիքն էր ջրերով։ Մոտեցավ հոլիկին, որ փլատակ էր դարձել՝ քարերի և ցեխի կույտ։ Ձողով խառնեց, փորփրեց, ձեռներով հոլիկի քարերը մի կողմ ձգեց, նորից փորփրեց, և հանկարծ տեսավ իր սիրած մեծ բահի կոթը։ Եռանդով, ուժով քաշեց կոթից և դուրս եկավ բա-



— Բահս գտա, բա՜հս,— ոգևորված բարձր գոչեց Ավագը։

հը, որ թեև ցեխոտ էր, բայց տեղ-տեղ էլի փայլում էր աշխատանքի մեջ սրված պողպատը։ Կարոտով նայեց բահին, ափով մաքրեց վրայի ցեխը և ապա մի ձեռքով սրբելով ճակատի քրտինքը, մյուս ձեռքով բարձրացրեց փայլող բահը և հաղթանակ տանողի պես ցույց տվեց բոստանչիներին։

— Հը՞, ի՞նչ գտար,— ձայնեցին արհեստակից ընկերները։

— Բահս գտա, բա՜հս,— ոգևորված բարձր գոչեց Ավագը։

— Էնպես ես գոռում, գիտես թե բոստանդ ես գտել,— ծաղրով ձայնեցին նրանք։

— Բահս գտա, ասել է՝ բոստանս էլ գտա,— հանդարտությամբ պատասխանեց Ավագը։

— Ջաղացքը կորցրել, չախչախն է գտել...

Ավագը վառեց չիբուխը, նայեց բոստանին ու ջրերին և սկսեց աշխատանքը։

Բոստանի երկարությամբ ակոս բացեց մինչև գետակը, փոսերի ջրերը ուղղեց դեպի ակոսը։ Երեկոյան բոստանում այլևս ջուր չկար։

Մյուս օրը, վաղ առավոտից իր պատանի որդու հետ մաքրեց հոլիկը, գտավ ուրիշ գործիքներ էլ։ Տեղ-տեղ տիղմի խավերը բարակացրեց, տիղմը հավաքեց, տարավ թափեց բոստանի եզերքին։ Ապագայում պետք կգար իբրև պարարտանյութ։ Մի երկու օր անց հոլիկը արդեն վերաշինել էր։

Երբ օրեր հետո բոստանչի ընկերները ձեռք զարկեցին մարգերը մաքրելու, Ավագն արդեն շուտ հասունող կոտեմն ու համեմը տարել էր շուկա վաճառելու։ Իսկ երբ իր ընկերները կոտեմն ու համեմը հանել էին շուկա, Ավագի բոստանը ծայրեծայր ծածկվել էր բանջարեղեններով։ Կարծես ոչ մի վնաս չէր պատահել նրա բոստանին։

Ավագի հոլիկի օջախից մեղմ բարձրանում էր ծուխը։ Ավագն էլ երեկոյան, աշխատանքից հետո նստել էր հոլիկի դռան առաջ, ախորժակով ծխում էր չիբուխը և գոհունակությամբ նայում էր իր ծաղկած բոստանին։

— Ապրե՜ս, Ավա՛գ ջան, ապրես, իսկական տղամարդ ես, հալալ է քեզ,— ասում էին ընկերները Ավագին՝ նրա հասած բոստանին աչք ածելով։



# ՊԻՊԸ

ՍՏ. ԶՈՐՅԱՆ

Նկ. Մ. ՏԻՐԱՏՈՒՐՅԱՆԻ

Մի ծանոթ կին պատմում է անցյալում կատարված մի դեպք:

— Մի երեկո ես լվացք արի՝ փռեցի բակում ու պատրաստվեցի քնելու: Ամուսինըս թե՝

— Բա լվացքը թողնում ես քնո՞ւմ... Գիշերը չեն գողանա՞:

— Ի՞նչ պիտի լինի,— ասի,— բակը պարիսպ ունի. դուռը կփակենք, մարդ չի մտնի:

Ամուսինս թե՝

— Դու գիտես. ես պատասխանատու չեմ:

Ու ինքն էլ մտավ անկողին:

Առավոտը դեռ քնած էի, մեկ էլ ամուսինս՝

— Տեսա՞ր, որ ասածս կատարվեց: Թոկի վրա ոչ մի շոր չի մնացել. բոլորը հավաքել-տարել են... Ես վեր թռա ու ինձ գցեցի բակը: Իսկապես. պարանի վրա ոչ մի սպիտակեղեն. տեղ-տեղ միայն սեղմիչներն էին մնացել թոկի վրա կամ ընկել գետին:

— Այ քեզ խայտառակությո՞ւն,— ձեռներս խփեցի իրար և դես ու դեն ընկա, որ տեսնեմ, թե գողերը ո՛րտեղից են մտել բակը՝ դռնի՞ց, թե պարսպի վրայից:

Շրջեցի բոլոր անկյունները՝ կասկածելի ոչինչ չգտա: Դուռը փակ էր, իսկ պատերի վրա ոտքի հետքի ոչ մի նշան:

Տխուր, հուսահատ վերադառնում եմ տուն: Հանկարծ աչքովս ընկավ մեր Պիպը՝ շունը, որ պառկել էր սովորականից բարձր մի տեղ: Դա այնքան տարօրինակ էր, որ ակամա կանգ առա, և ի՞նչ տեսնեմ... Լվացքի ամբողջ շորերը հավաքված-կիտված են իրար վրա և Պիպը պառկել է դրանց գլխին: Վազեվազ գնացի ամուսնուս կանչեցի.

— Մի արի տե՛ս...

Եկավ նայեց և գլուխն օրորեց զարմացած:

— Դե, պա՛րզ է,— ասաց,— վախեցել է՝ գողերը գան տանեն, հավաքել է ու վրան պինդ նստել:

Երբ լվացքս սկսեցի վերցնել՝ շորերի ծայրին նկատեցի միայն ատամների հետքեր և այն, որ քարշ տալուց բոլորը հողոտվել էին:

Նորից լվացք արի ու նորից փռեցի: Այդ օրվանից Պիպը դարձավ մեր ընտանիքի սիրելին:

---

## ՊԱՐԾԵՆԿՈՏԸ

Գ. ՎՈՐՈՆԿՈ

Պարծենում էր զոռոզ կատուն,
— Կանցնեմ գետը ես լայնահուն:
Հենց որ ցատկեց կատուն գետը,
Ջուրը քշեց տարավ հետը...
Մի՛ պարծենա, փոքրիկ Արա՛,
Ուժիցդ վեր գործ մի արա:

## ՀՈՐԹՆ ՈՒ ՈՋԻՆԸ

Մի օր կանաչ դաշտի միջին
Հանդիպեցին հորթն ու ոզնին:
Երբ չալ հորթը լիզեց ոզնուն,
Փուշը ծակեց նրա լեզուն:
Այնժամ ծաղրեց ոզնին նրան,
— Ինչ պատանի՝ մի՛ տար բերան:

Փոխադր. Հ. ՍԵՎԱՆԻ



*ՀՈՎՀ. ՇԻՐԱԶ* *Նկ. ԱՆ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ*

## ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ

Արագածը իմ վիթխարի
Ձյունամորուք պապն է բարի.
Ու լայն գրկից իջնում են, տես,
Աղբյուրները, թոռների պես.
Իջնում արագ,
Ոտքերի տակ
Խաղ են անում ծաղիկների,
Դաշտերի հետ ու ձորերի.
Ու դեպի վար
Վազում խելառ՝
Հեռուների մշուշ-քողում
Պահմտոցի ասես խաղում:



## ՄԱՆՈՒԿՆԵՐԸ

Մանուկները կանչում են ինձ,
Մանուկները չեն համբերել,
Մանուկները սար ու ձորից
Ձնծաղիկ են քաղել բերել:

Բայց բալիկներս ի՞նչ իմանան՝
Ոչ թե ծաղկունքն իրենց սիրուն,
Այլ իրենք են կյանքը գարնան,
Իրենք են մեզ գարուն բերում...



# ՎԱՍԻԼԻ ԻՎԱՆՈՎԻՉ ՍՈՒՐԻԿՈՎ

Մոսկվա։ Կարմիր հրապարակ։ Սայլերի վրա նստած են մարդիկ, որոնք բռնել են վառվող մոմեր։ Վերջին հրաժեշտ տալու համար եկել են կանայք, մայրեր, երեխաներ։ Ահա մի փոքրիկ աղջիկ աչքերը լայն բացած նայում, բայց չի կարողանում հասկանալ, թե ի՞նչ է կատարվում։ Առավոտյան երկնագույն մշուշի միջից երևում են ծանր կախաղանները։ Ահա մի երիտասարդի տանում են կախելու։ Սակայն ի՞նչ է կատարվում, ինչի՞ մասին է պատմում այդ նկարը։

Նկարի կենտրոնական դեմքերից մեկը սուր, ծակող հայացքով նայում է դեպի աջ, ուր Կրեմլի պատի տակ կանգնած է Պետրոս Առաջինն իր համախոհներով։ Նա դատաստան է տեսնում ստրելեցների հետ, որոնք համարձակվել են պայքարել իր դեմ։

Այդ նկարը, որը կոչվում է «Ստրելեցների մահապատժի առավոտը» պատկանում է ռուս նշանավոր նկարիչ Վասիլի Իվանովիչ Սուրիկովին։

Վ. Ի. Սուրիկովը ծնվել է 1848 թվականին Սիբիրի Կրասնոյարսկ քաղաքում։ Ծննդավայրում անցկացրած օրերը անջնջելի տպավորություն են թողնում նրա վրա։ Նա այդտեղ ծանոթանում է ռուս ժողովրդի հերոսական պատմությանը։



Վ. Ի. ՍՈՒՐԻԿՈՎ (ինքնանկար)

1869 թվականին Սուրիկովն ընդունվում է Պետերբուրգի Գեղարվեստների ակադեմիան և 1875 թվականին ավարտում է ոսկե մեդալով։

Վ. Ի. Սուրիկովը մեկը մյուսի հետևից նկարում է իր լավագույն գործերը։ «Ստրելեցների մահապատժի առավոտը», «Մենշիկովը Բերյոզովում», «Բոյարուհի Մորոզովան», «Սիբիրի գրավումը Երմակի կողմից», «Սուվորովի անցումն Ալպերով» և այլ նկարներում պատկերված են պատմական խոշոր դեպքեր։ Նկարչի ուշադրության կենտրոնումն է հերոսական ռուս ժողովուրդը։

«Ես չեմ հասկանում առանձին պատմական անձնավորությունների գործողությունները առանց ժողովրդի», գրում է Վ. Ի. Սուրիկովը։ Այդ սկզբունքով է առաջնորդվել նա իր ամբողջ ստեղծագործական կյանքում։

Ահա «Սուվորովի անցումն Ալպերով» նկարը։ Վ. Ի. Սուրիկովը անձամբ եղել է Շվեյցարիայում, տեսել պատմական այն վայրերը, որոնցով հաղթականորեն անցել են ռուս մարտիկներն իրենց անման զորավարի առաջնորդությամբ։ Այդ նկարում Վ. Ի. Սուրիկովը գովերգում է ռուս մարդու հերոսությունը, նրա պայքարը հայրենիքի հաղթանակի համար։

Վ. Ի. Սուրիկովի հարուստ ստեղծագործությունն իր պատվավոր տեղն է գրավում ռուսական և համաշխարհային արվեստի գանձարանում։ Նրա լավագույն ստեղծագործությունները գտնվում են Մոսկվայի Տրետյակովյան պատկերասրահում և Լենինգրադի ռուսական թանգարանում։ Վ. Ի. Սուրիկովը մեռավ 1916 թվականին։

Մ. ՂԱԶԱՐՅԱՆ

# ...րապամփձերով





Բազմաթիվ ու բազմազան են մեր երեխաների ձըգտումները. նրանք բոլորն էլ աշխատում են դառնալ ճարտարապետներ, բժիշկներ, ֆիզիկոսներ և այլ բարձր մասնագիտության տեր մարդիկ։ Նրանց այդ վառ ցանկությունններն ու երազանքները իրականություն դարձնելու համար, մեր երկրում ստեղծվել են բազմաթիվ պիոներական պալատներ, պատանի տեխնիկների կայաններ, որտեղ երեխաները սովորում ու կատարելագործում են իրենց շնորհքը։

Մեր ռեսպուբլիկայի Պիոներների պալատում, պատանի տեխնիկների կենտրոնական կայանում, դպրոցներում գործող «հմուտ ձեռքերի» խմբակներում նույնպես ընդգրկված են շատ երեխաներ։ Դպրոցներում ստացած գիտելիքների հիման վրա, հմուտ ղեկավար-խմբակավարների օգնությամբ նրանք սովորում և կատարելագործում են իրենց ճարտար ձեռքերի փորձը, իրենց մտքի թռիչքը։

Այս տարի, ապրիլ ամսին Երևանի Պիոներների պալատում բացվելու է ֆիզիկայի ինքնաշեն գործիքների ռեսպուբլիկական ցուցահանդես։ Այդ ցուցահանդեսին մասնակցելու համար այժմվանից եռանդուն աշխատանք են տանում թե՛ Պիոներների պալատի, թե՛ պատանի տեխնիկների կայանի, թե՛ դպրոցների խմբակները և թե՛ առանձին պիոներներ։ Առաջին անգամ չէ, որ նրանք իրենց հմուտ ձեռքերի աշխատանքները ներկայացնում են ցուցահանդես և նրանցով հիացմունք պատճառում։

Տպագրում ենք ցուցահանդեսին նախապատրաստվող երեխաների մի քանի գործեր։ Նկ. 1. Լուսիկ Կարապետյանը և Լիդա Թամազյանը իրենց պատրաստած էլեկտրական տրակտորի հետ։ Նկ. 2. Լաուրա Մովսիսյանը և Ժաննետա Հարությունյանը դիտում են իրենց պատրաստած քայլող էքսկավատորը։ Նկ. 3. Արա Մանուկյանը պատրաստել է ֆոտո ռելե, իսկ Մովսես Գալստյանը՝ բարձր հաճախականության գեներատոր։ Նկ. 4. Ջուլետա Մուրադյանը աշխատում է իր հեռագրական ապարատի վրա։ Նկ. 5. Խաչիկ Այվազյանը նույնպես բարձր հաճախականության գեներատոր է պատրաստել։ Նկ. 6. Ա. Կարանֆիլյանը իր պատրաստած սպիտակ լույս ստացող ապարատի հետ։ Նկ. 7. Սարգիս Սուվարյանը պատրաստել է մի շարք էլեկտրական սարքեր, որոնք աշխատում են հիանալի կերպով, իսկ այժմ նա մտածում է պատրաստել փոփոխական հոսանքի գեներատոր։

*Ֆոտոները՝ Ք. ՍԵՎԱՆՑՅԱՆԻ*

# ԻՆՉՊԵՍ ԴԻՄԱՎՈՐԵՑԻՆ

Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

Նկ. Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ

Հայրը և մայրը աշխատանքի էին, տատը զբաղված էր տնային գործով, իսկ Սերոբը՝ Միսակի մեծ եղբայրը, փոքր սենյակում փակված պատրաստվում էր քննություններին: Հենց դա էլ հարկավոր էր Միսակին:

Լավ տղա է այդ Սերոբը: Նրան սիրում են դպրոցում, սիրում են տանը. ամեն տեղ:



*Միսակին տեսնելուն պես, նա թևերը կախ գցեց, փքվեց ու սլացավ նրա վրա*

Մայրիկը նրան միշտ հագցնում է մաքուր ու կոկիկ, իսկ իրեն գրկում է համբուրում և ասում.

— Նա դպրոցական է, Մի՛ս, այդպես էլ պետք է լինի:

Տատիկը հոգ է տանում, որ Սերոբը ամեն առավոտ արթնանա ժամանակին, զբաղվի մարմնամարզությամբ և ուրախ տրամադրությամբ դպրոց գնա: Իսկ ինչո՞ւ իրեն էլ Սերոբի հետ չեն արթնացնում. տատիկը շոյում է նրա գլուխը և ասում.

— Դու փոքրիկ ես, Մի՛ս, քո ժամանակը չէ... Իսկ Սերոբը դպրոցական է, այդպես էլ պետք է լինի:

Միայն այդ հո չի՞: Երբ հայրիկը երեկոյան աշխատանքից տուն է գալիս, առաջին հերթին նայում է Սերոբի տետրերը, թերթում դասագրքերը և ամենից շատ ուրախանում օրագրում ստացած հինգերի համար:

Ինքը Միսակն էլ շատ է սիրում Սերոբին: Եղբայրը նրա համար գրքեր է կարդում, ոտանավորներ սովորեցնում, տանում է դպրոցական երեկույթներին: Այնքան բան գիտի նա՜... Ահա ինչպիսին է Սերոբը:

Միսակն անկողնում պառկած մտածեց, մտածեց ու քնեց... Միսակն էլ աշնանը դպրոց կգնա, լավ կսովորի, պիոներ կդառնա: Բայց այսօր ուզում է կատարել իր ցանկությունը՝ կապել եղբոր պիոներական վզկապը և փողոց դուրս գալ: Քանի՜ անգամ Սերոբը նրա ձեռքից առել է վզկապը և ասել.

— Դեռ փոքր ես, Միսա՛կ, պիոներական խոստում չես տվել, քեզ չի կարելի...

Միսակը շատ է ուզում պիոներական վզկապ կապել. ի՞նչ անենք, թե փոքր է. մի անգամ հո կարելի՞ է... Հայրիկն ու մայրիկը Միսակին պատմել են. «Երբ երեխան պիոներական վզկապ է կապում, դառնում է ավելի խելոք, մաքրասեր, սրտոտ ու քաջ, և երբեք չի ստում»... Էլ ինչպես Միսակը չսիրի և չկապի այդ վզկապը:

Միսակն անմիջապես լվացվեց, սանրեց մազերը, հագավ նոր շորերը, կապեց Սերոբի պիոներական վզկապը և նորից նայեց հայելուն: Այս անգամ ամեն ինչ կարգին էր: Նա ուրախ-ուրախ դուրս գնաց տանից:

Ամենից առաջ Միսակին հանդիպեց տատիկի սիրած թխսկանը՝ Դուդուն: Շրջապատված ճուտիկներով «կըրր, կըրր» անելով գալիս էր դեմից:

Միսակին տեսնելուն պես, նա թևերը կախ գցեց, փքվեց ու սլացավ նրա վրա: Միսակը սկզբում վախեցավ, ուզեց փախչել, բայց հիշեց, որ պիոներական վզկապ ունի վզին և տեղում կանգնեց:

Դուդուն տեսնելով Միսակի կոկիկ տեսքը, մանավանդ հանգիստ կեցվածքը, դեռ նրան չհասած կանգ առավ, խաղաղվեց «կըրր, կըրր» անելով իր ճուտերի հետ միասին անցավ Միսակի կողքով:

Մի քանի քայլ էր արել Սիսակը, երբ նրա դեմն ելավ զոռոզ, կարմրակատար աքաղաղը: Առաջ Սիսակի մոտով անցնելիս նա չէր էլ ուզում նրան նկատել. իսկ այսօր տեսավ թե չէ, գլուխը բարձր բռնած, փայլեցնելով վառ փետուրները, լայն-լայն քայլերով եկավ, նրան նայեց ու աչքերին չհավատաց...

— Ա՛յ, արժե հիմա քեզ գովել,— ասաց նա և Սիսակի պատվին մի զիլ «ծուղրուղու» կանչեց, որով ուզում էր ասել.— Տեսեք, տեսեք ինչ լավ տղա է դարձել մեր Սիսակը: Գնա, Սիսա՛կ, գնա, այսօրվանից ես էլ եմ սիրում քեզ. գնա զբոսնիր, որ ուրիշներն էլ քեզ տեսնեն...

Ուրախացավ Սիսակն ու առաջ գնաց...

— Ա՛յ, ինչ եմ ասե՜լ, կարգին տղա ես դարձել,— խոսեց նրանց տան մոտով հոսող առվակը.— մազերդ սանրել, երեսդ լվացել, նոր շորեր ես հագել, պիոներական վզկապ կապել... թե չէ՝ ինչի՞ նման էիր առաջ: Առավոտյան վեր էիր կենում առանց լվացվելու հաց ուտում և վազում մոտս, ցեխոտվում ոտից գլուխ... Ափերս քանդում, հունս լցնում քարերով, ճանապարհս փակում... Հիմա արդեն խելոք տղա ես, քեզ հետ կարելի է խոսել: Գնա, Սիսա՛կ, գնա, այսօրվանից ես էլ եմ քեզ սիրում. գնա զբոսնիր, որ ուրիշներն էլ քեզ տեսնեն և ասեն. «Ի՜նչ լավ տղա է դարձել»:

Ուրախացավ Սիսակն ու առաջ գնաց: Կապույտ երկնքում ճախրում էին սպիտակաթև աղավնիները: Հենց որ նրանք Սիսակին տեսան, իրենց գեղեցիկ թևերը այնպես թափահարեցին, որ կարծես ծափ էին տալիս ու Սիսակին ասում.

— Կեցցե՜ս, Սիսա՛կ, կեցցե՜ս, իսկական պիոներ ես... գնա զբոսնիր, որ ուրիշներն էլ տեսնեն քեզ և ասեն՝ «Ի՜նչ լավ տղա է դարձել»:

Ուրախացավ Սիսակն ու առաջ գնաց...

Սարից իջնում էր զով զեփյուռը: Հանդիպեց Սիսակին, ուրախացավ, շոյեց նրա սիրունիկ դեմքն ու խարտյաշ մազերը, ծածանեց վզկապն ու ասաց.

— Ապրես, Սիսա՛կ, ապրես, քեզ շատ սիրեցի. գնա զբոսնիր, որ ուրիշներն էլ տեսնեն ու ասեն՝ «Ի՜նչ լավ տղա է դարձել»:

Ուրախացավ Սիսակն ու առաջ գնաց...

Շրջեց երկար: Եվ երբ հոգնած տուն էր վերադառնում, դեմից ժպտաց արևը, ուրախացավ, ավելի պայծառ շողաց, շոյեց նրա գլուխն ու կարմիր վզկապը, համբուրեց այտերն ու ասաց.

— Ապրես, Սիսա՛կ, ապրես, միշտ այդպես խելոք և մաքրասեր եղիր, որ բոլորը քեզ սիրեն: Հիմա գնա տուն, որ մայրդ էլ քեզ տեսնի և ասի՝ «Ի՜նչ լավ տղա է դարձել Սիսակը»:



*...Սիսակն արթնացավ:*

Ուրախացավ Սիսակն ու տուն գնաց:

Հենց դռների մոտ նրան սպասում էր մայրը: Սիսակին տեսավ թե չէ, առաջ գնաց, պինդ գրկեց նրան և արևի պես ջերմ-ջերմ համբուրեց որդուն...

Սիսակն արթնացավ: Արևն իր վառ շողերով խտտում էր նրա դեմքը, իսկ մայրը մատով խփում էր այտին...

# ԿԱՐՃՆ ՈՒ ԵՐԿԱՐԸ

*(Ուզբեկյան հեքիաթ)*

Հ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ

Նկ. ԱԼ. ԳԵՎՈՐԳՅԱՆԻ

Խուլ տայգայում, գետակի մոտ,
Ապրում էին երկու որսորդ.
Նրանք նման չէին իրար՝
Մեկը կարճ էր, մեկը՝ երկար:
Ապրում էին իբրև դրկից,
Զկներ էին որսում գետից,



Թակարդ սարքում, բռնում աղվես,
Բայց իրար հետ՝ թշնամու պես:
Եվ մի օր էլ որսի տեղում
Խոսում էին, իրար ծաղրում.
— Ա՛յ դու բզուկ,
Ուժերից զուրկ.
Մի ձեռքով ես
Կճզմեմ քեզ:
— Փորձիր ու տես...
Բարդի ծառ ես,
Չես տեսնի ինձ
Քո բարձունքից:
Այսպես նրանք խոսքով անցան
Անտառի մեջ ու չտեսան,
Որ մի բրդոտ արջ ածդահա
Ընկավ երկար մարդու վրա:
— Վա՜յ, ես կորա, ազատիր ինձ,—
Գոչեց մարդը արջի տակից:
Մոռանալով կռիվ ու վեճ,
Կարճլիկ մարդը առաջ վազեց
Եվ իր փոքրիկ կացինն առած,
Արջի գլխին տվեց հարված:
Արջն այս անգամ խիստ զազազած,
Կարճլիկ մարդու վրա գնաց:
— Վա՜յ, ես կորա, հասիր, ամա՜ն...
Ազատիր ինձ, իմ բարեկամ:
Իր ահագին կացինն առած
Երկար մարդը վազեց, գնաց,
Այնպես խփեց արջի գլխին,
Որ բրդոտը փռվեց գետնին:
— Ա՛յ բարեկամ, դու հերոս ես,
Թեև պստիկ, բայց նստիկ ես.
Քո կացինը որ չլիներ,
Այս գազանը ինձ կսպաներ:
— Դու էլ պակաս աժդահա չես,
Յոթ զոմեշի ուժ, բափ ունես:
Հարվածեցիր արջին այնպես՝
Գլուխն եղավ ճիշտ երկու կես:
— Բա ինչո՞ւ ենք ծաղրում իրար,
Մեջտեղ բերում կարճ ու երկար.
Արի ապրենք հաշտ, միաբան,
Լինենք ընկեր ու բարեկամ:
Ու չի ընկնի մեզ այսուհետ
Ո՛չ մի փորձանք, ո՛չ մի աղետ:

# ԵՐԵԽԱՆԵՐԻ ԳՈՐԾԸ

Հ. ՂԱՁՈՅԱՆ

Ֆոտո Վ. ՍԵՎՈՅԱՆԻ

Միջանցքի պատուհանի մոտ խմբված տղաները դուրս էին նայում։ Գալիս էր առաջին ձյունը։ Անվերջ, անընդհատ իջնում էին սպիտակ, դողդոջուն փաթիլները։ Իջնում էին ու մաքուր շերտով փռվում քաղաքի վրա։

— Լավ ձնագնդի կխաղանք դասերից հետո,— ասաց տղաներից մեկը։

— Ա՜յ թե կոզղանք,—ուրախացան մյուսները։

Այդ զվարթ խմբում միայն մի փոքրիկ տղա էր լուռ։ Նա մտահոգ նայում էր դուրս՝ դպրոցի շենքի երկարությամբ ձգվող հողամասի նեղ շերտին, որի գորշ տարածությունն հետզհետե սպիտակեց ու կորավ աչքից։

Հենց այստեղ սկսեց աշխատել նա գարնանը, երբ ընդունվեց պատանի բնասերների խմբակը։ Երեխաները փորեցին, քարերից մաքրեցին հողը, մարգեր պատրաստեցին, տեսակ-տեսակ բույսեր ցանեցին։

Գեղեցիկ էր հողակտորը և՛ գարնան զարթոնքին, և՛ ոսկեղեն աշնանը։

«Իսկ հիմա՞... Հիմա այդ բույսերի հետքն էլ չկա,— մտածում էր փոքրիկ տղան,— միայն նորատունկ ծառերի մերկ ճյուղերն են դուրս ցցվել ձյան տակից... Ի՞նչ պիտի անի մեր խմբակն ամբողջ ձմեռ»։

Իսկ ձյունը տեղում էր, տեղում անընդհատ։

Բայց... բանից դուրս եկավ, որ պատանի բնասերները ձմռանն էլ կարող են հետաքրքիր գործեր անել։

***

Երևանի Կիրովի անվան դպրոցի պատանի բնասերները ձմեռային աշխատանքի պլան կազմեցին։ Պարապմունքների համար նրանք ընտրեցին այնպիսի թեմաներ, որոնք կօգնեն դպրոցամերձ հողամասում գործնական աշխատանք կատարելիս։ «Կենդանիների և բույսերի դերը մարդու կյանքում», «Ինչպես պետք է նախապատրաստել հողամասը ցանքի համար», «Ինչպես պետք է ցանել բանջարանոցային կուլտուրաները», «Ինչպես պետք է տնկել պտղատու ծառերը»։ Պատանի բնասերներից շատերը թեմաներ վերցրին խմբակում զեկուցելու համար։

Բնասերներից ամեն մեկը խնամքով մշակում է իրեն տրված թեման. կարդում է ուսուցչուհու հանձնարարած գրականությունը, փորձեր է անում։ Բայց պարապմունքին նախապատրաստվում է ոչ միայն գլխավոր



Խմբակի անդամները աշխատանքի ժամին։

զեկուցողը. կարդում, նախապատրաստվում են նաև մյուսները։

Աշխույժ հարցուպատասխան է սկսվում ամեն մի զեկուցումը լսելուց հետո։ Դիտողություններ, լրացումներ են անում զեկուցողին, վիճում են։ Փոքրիկ ցուցադրական ապարատով բնասերները դիտում են օրվա թեմային վերաբերող նկարներ։

Խմբակը պատի թերթ էլ է լույս ընծայում։ Թերթի թարմ համարի առաջ հավաքված երեխաները հետաքրքիր նորություններ են կարդում գյուղատնտեսության ու բիոլոգիա-

յի բնագավառից, ծանոթանում են հայրենական գիտության նվաճումներին, պատմում են իրենց աշխատանքի մասին, հանելուկներ ու կրոսվորդներ են լուծում։

***

Ամեն տարի, մարտի վերջին, Կիրովի անվան դպրոցում հանդիսավոր երեկույթ է լինում։ Երեկույթի օրը մեծ բազմություն է հավաքվում դպրոցի դահլիճում։ Գալիս են տարբեր դասարանների աշակերտներ, գալիս են և շատ ուսանողներ ու գիտնականներ, բանվորներ ու ինժեներներ, գյուղատնտեսներ ու բժիշկներ։ Նրանցից ոմանք գալիս են ուրիշ քաղաքներից, որ ներկա լինեն տրադիցիոն երեկույթին։ Տարբեր հասակի ու տարբեր զբաղմունքի այդ բոլոր մարդկանց մի ընդհանուր բան կապում, մտերիմ է դարձնում. նրանք բոլորն էլ Կիրովի անվան դպրոցի սաներն են։

Ինչպես միշտ, այս տարի էլ դպրոցը տրադիցիոն երեկույթին սկսեց նախապատրաստվել շաբաթներ առաջ։ Աշխուժով են նախապատրաստվում նաև պատանի բնասերները։ Նրանք, տրադիցիոն երեկույթի օրը բացվելիք դպրոցական ցուցահանդեսի հա-



Պատանի միչուրինականները ընթերցում են իրենց պատի թերթի նոր համարը։

մար, կարգի են բերում իրենց աշխատանքները, նորերն են պատրաստում։ Իսկ դրանք շատ են ու տարբեր։ Ահա 7-րդ դասարանի աշակերտներ՝ Յուրի Արտաշեսյանի, Վալերի Մակարյանի պատրաստած ձկան կմախքը, Գարիկ Հայրապետյանի՝ բանջարանոցային կուլտուրաների սերմերի կոլեկցիան, 6-րդ դասարանցի Ռաստիսլավ Զաքարյանի պատրաստած՝ հանքատեսակների կոլեկցիան... Բոլորն էլ անշուք, հասարակ բաներ են. բայց ինչքա՜ն խնամքով ու սիրով են պատրաստել երեխաները։

Նույնիսկ ամռանը, դպրոցից հեռու՝ ճամբարում կամ ամառանոցում, պատանի բնասերներն իրենց խմբակը չեն մոռացել։ Ահա կիպարիսի, բամբուկի, էվկալիպտի և մերձարևադարձային այլ բույսերի տերևների մի հավաքածու։ Այս էլ պատրաստել է 7-րդ դասարանցի Սերգեյ Լեբեդևը, որն իր ամառային արձակուրդն անց է կացրել գեղեցիկ Խոստայում։

«Ինչ ենք ստանում բամբակից»։—Այսպես է անվանել բնասերներից մեկն իր կոլեկցիան։ Ստվարաթղթի վրա փակցված են հասուն բամբակի փաթիլը, կորիզը, բուսական յուղի նմուշ, զտված բամբակ, բամբակի թելերի ու հյուսվածքների նմուշներ։ Նույն տիպի մի ուրիշ կոլեկցիայի տակ գրված է. «Ի՞նչ է տալիս մեզ շերամը»։

Ցուցահանդեսում կդրվեն նաև պատանի բնասերներ՝ Յուրիկ Խանվիլյանի ու Նիկոլայ Ցելիկովի աշխատանքները։

***

Սկսվում է քմահաճ մարտը։ Երբեմն, գորշ ամպերը ճեղքելով, դուրս է նայում արևը։ Ձյունը փափկում, շարժվում է սև։ Տեղ-տեղ երևում է գետինը՝ խոնավ ու գարնանաբույր։ Արևկող վայրերում հողից իր գլխիկն է հանում սպիտակ, քնքուշ ձնծաղիկը։ Սկսվում է ձնհալը՝ դաշտերում ու սարալանջերին։ Պղտոր ջրերը քչքչալով վազում են առուներով։ Ժամանակն է։ Մի քանի օր հետո թևին տալով կվերադառնան չվող թռչունները ու աշխարհը կլցնեն զվարթ ծլվլոցով։

Վաղուց են սպասում նրանց Կիրովի անվան դպրոցի պատանի բնասերները։ Նրանք նախապատրաստվում են թռչնի օրվան։ Համար բներ են պատրաստում թևավորների համար, որ կախեն դպրոցի շրջակայքի

*բարձր ծառերից, երգեր ու բանաստեղծություններ են սովորում, որ թռչնի օրը զվարթ ցերեկույթ ունենան։ Լավ գիտեն նրանք, թե ինչ օգնականներ են իրենց համար թռչունները։*

*— Բայց դեռ ինչքա՜ն բան կա, որ չենք արել,— ասում են պատանի բնասերները։— Մենք ուզում ենք էքսկուրսիաներ կազմակերպել, հաճախակի ու ավելի հետաքրքիր դարձնել խմբակի պարապմունքները, ավելի շատ տեսակի բույսեր աճեցնել դպրոցամերձ հողամասում...*

*Նրանք որոշել են կենդանի անկյուն հիմնել։ Դպրոցի բակում փոքրիկ տնակ են պատրաստել կենդանիների համար։*

*Բնասերները շատ գործ ունեն անելու նաև ամռանը։ Սուրեմն պետք է նախապատրաստվել։ Պատահական չէ, որ վերջին պարապմունքների համար նրանք այսպիսի թեմաներ են ընտրել. «Ինչպես պատրաստել կենդանիների կմախք ու խրտվիլակ», «Ինչպես պատրաստել հերբարիումներ և կոլեկցիաներ»։*

*Կիրովի անվան և Բելինսկու անվան դպրոցները նույն շենքում են տեղավորված։ Երկու դպրոցի պատանի բնասերները որոշել են գարնանն իրենց դպրոցի շենքը ծաղիկներով պատել։*

*Կրացվեն, կբուրեն երփներանգ ծաղիկներն ու ամեն մի անցորդ ուրախությամբ կմտածի. «Այդ իրենց՝ երեխաների գործն է»։*

---

## Գ Ա Ր Ո Ւ Ն

Արամիկը ելավ բակ,
Տեսավ ծառն է կանաչել,
Առուն կանաչ ծառի տակ
Սկսել է կարկաչել։

Զյունը սարն է բարձրացել,
Եվ լայնարձակ դաշտերում,
Ուր ծաղիկներն են բացվել,
Մեխենան է ճռճռում։

— Զա՛ն, ծիտիկներն են երգում
Ծառի կանաչ ճյուղերին...
Ողջույն, ողջույն են ասում
Գարնան պայծառ օրերին։

*ԱՐԱԳԱԾ ԿԱՐՃԻԿՅԱՆ*
*(Երևանի Մ. Նալբանդյանի անվան դպրոց)*

# ՓՈՔՐԻԿ ՇԼԴԻԿՆԵՐԸ

*Ա. ՇԱՀԻՆՅԱՆ*

*Նկ. Ս. ՍԱՖԱՐՅԱՆԻ*

1

Գարիկի պապը գյուղից երկու ճագար ուղարկեց իր թոռանը։

Ճագարները դեռ փոքր էին։ Նրանցից մեկը սպիտակ էր, իսկ մյուսը մոխրագույն՝ ինչպես գորշ ամպի քուլա։ Նրանց մորթին այնքան փափուկ էր, որ շոյելիս թվում էր, թե ձեռքիդ տակ բամբակ է։

Գարիկը շատ էր սիրում իր շլդիկներին։ Հոգատար էր, ժամանակին կեր էր հասցնում նրանց. գազար, կաղամբի մնացորդներ... մի խոսքով այն ամենը, ինչ կարողանում էին ուտել փոքրիկ երկարականջները։ Ճագարների մասին հոգ էին տանում նաև Գարիկի ընկերները՝ Ստեփանիկը, Էմման ու մեկ էլ Գարիկի փոքր քույրը՝ Մանուշը։

Մանուշին այնքան էր դուր եկել սպիտակ ճագարը, որ մի անգամ, քնելուց առաջ, խնդրեց եղբորը, թույլ տա նրան իր անկողնում քնեցնել...

— Շլդիկները անկողնում չեն քնում,— բացատրեց Գարիկը:

— Իսկ ինչո՞ւ մեր փիսոն քնում է, տիկնիկս էլ:

— Տիկնի՞կս, փիսո՞ն... դե դու հասկացիր վերջապես. փիսոն կարող է, իսկ շլդիկին չես քնեցնի:

Բայց Մանուշը չէր հասկանում: Դե՛, նա փոքր էր, ինչպե՞ս հասկանար:

Եվ այսպես օրերն անցնում էին, շլդիկները մեծանում: Սկսվեց ձմեռը. ցրտերն ընկան: Հարկավոր էր նրանց ներս տեղափոխել:



*Գարիկը շատ էր սիրում իր շլդիկներին*

2

Ճագարներն ապրում էին ներքնահարկում: Այնտեղ այնքան էլ ցուրտ չէր, իսկ կեր ինչքա՞ն ասես կար: Միայն, չգիտես ինչու, վերջերս սպիտակ շլդիկն ավելի ուշ-ուշ սկսեց դուրս գալ: Քիչ էր ուտում և շարունակ կծկվում էր վանդակի անկյունում: Մոխրագույնը հաճախ մոտենում էր սպիտակին, լիզում նրա մորթը, երբեմն էլ դունչը մոտեցնում էր ականջին և անձայն շարժում բեղիկները: Երևի իր ճագարային լեզվով ինչ-որ բան էր հարցնում:

Գարիկն անհանգիստ էր: Նա կանչեց Ստեփանիկին և Էմմային:

— Սպիտակ շլդիկը հիվանդ է,— տխուր ասաց նա:

— Հիվա՞նդ է,— վախեցած հարցրին երեխաները:

Մանուշը, որ այդ ժամանակ ներքնահարկ էր իջել, ջուր էր տալիս նրանց, շփոթվեց, ձեռքից գցեց ջրով լի ափսեն ու կոտրեց: «Երբ ես նրան անկողնում քնեցնեի, հիմի էլ չէր հիվանդանա», մտածեց նա և սկսեց լաց լինել: Երեխաների աղմուկի վրա իջավ Գարիկի տատը:

— Այդ ի՞նչ է պատահել...

— Տատի՛կ, սպիտակ շլդիկը հիվանդ է,— ասաց Գարիկը:

— Նա ոչինչ չի ուտում,— ավելացրեց Էմման:

Տատը ուշադրությամբ զննեց սպիտակին:

— Դուրս եկեք ու հանգիստ թողեք նրանց. նա հիվանդ չի,— ասաց տատն ու գնաց:

3

Մի անգամ, երբ Գարիկը վերադարձավ դպրոցից ու սովորականի նման ներքնահարկ իջավ, զարմանքով նկատեց, որ վանդակի դուռը բաց էր, իսկ սպիտակ ճագարը չկար: Միայն մոխրագույնն էր այնտեղ, որ մեծ հաճույքով գազարի մնացորդներն էր կրկրթացնում:

Գարիկը նայեց շուրջը, իսկույն դուրս թռավ ներքնահարկից և ամբողջ կոկորդով սկսեց կանչել...

— Ստեփա՜ն, Էմմա՜... այստեղ եկեք:

— Ի՞նչ է պատահել,— հարցրին շփոթված երեխաները:

— Սպիտակ շլդիկը չկա...

— Ինչպե՞ս թե չկա,— զարմացան նրանք:

— Չկա էլի...

Երեխաները ներքնահարկ իջան ու սկսեցին փնտրել. բայց սպիտակ շլդիկը չկար ու չկար:

Էմման, որ այդ ժամանակ կործած դույլերի տակն էր նայում, զարմացած ճչաց.

— Այս ի՞նչ փոս է այստեղ...

Երեխաները իսկույն վազեցին դեպի Էմման: Ներքնահարկի անկյունում մի անցք կար. կարծես ինչ-որ մեկը դիտավորյալ փորել էր և միջից հանելով հողը, կիտել էր անցքի եզրին:

— Երևի առնետներն են արել,— աչքերը չռած ասաց Գարիկը:

— Նրանք այս անցքով եկել ու տարել են մեր շլդիկին,— հաստատեց Ստեփանիկը:

— Ա՛յ... ա՛յ, տեսե՛ք, սպիտակ մազեր են երևում անցքի մոտ,— բացագանչեց Էմման:

Երեխաները դեռ երկար ժամանակ այսպիսի ենթադրություններ կանեին, եթե այդ պահին ներս չգար Գարիկի հայրը՝ Մանուշի ձեռքից բռնած:

— Հայրի՛կ, սպիտակ շլդիկին տարել են,— վրա տվեց Գարիկը:

— Ո՞վ է տարել...

— Երևի առնետները: Տե՛ս, ի՞նչ խոր փոս են փորել,— ասաց Գարիկը՝ մատնացույց անելով խորհրդավոր անցքը:

Հայրը ժպտաց և շոյելով երեխաների գլուխները ասաց.

— Այդ առնետները չեն, սիրելինե՛րս. այդ անցքը հենց ինքը՝ սպիտակ շլդիկն է փորել, որպեսզի ձագուկներ հանի այնտեղ:

Երեխաները չհավատացին. իսկ երբ Գարիկի հայրը մանրամասն բացատրեց, նրանք իմացան, որ ճագարները ձմեռները միշտ էլ փոս են փորում և այնտեղ հանում իրենց ձագերը:

Եվ ճիշտ որ: Երբ երեխաները մի քանի



Երեխաների ուրախությանը չափ չկար:

օր հետո ներքնահարկ իջան, նկատեցին, որ անցքից դուրս եկավ սպիտակ ճագարը, իսկ նրա հետևից երեք փոքրիկ շլդիկ: Նրանք հազիվ ոստոստում էին մայր ճագարի հետևից:

Երեխաների ուրախությանը չափ չկար:

# ՆՈՒՆԵՆ ՈՒ ՓԻՍԻԿԸ

Ռ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Նունեի հայրը մի օր
Դաշտից բերեց մի չաղ լոր.
— Վանիկ, Աշո՛տ, շուտ եկեք
Մի լավ վանդակ պատրաստեք.
Ես էլ գնամ ու բերեմ
Նրա համար ջուր, ցորեն,—
Ասաց Նունեն ու վազեց
Դեպի ամբարն իրենց մեծ:
Երբ ետ եկավ նա շուտով
Ամանը լիքը կուտով,
Հանկարծ կանգնեց զարմացած,
Ձեռքից ամանն ընկավ ցած:
Չկար լորիկն իր սիրուն,
Դես-դեն ընկավ, չգտավ
Եվ արցունքը աչքերում
Նա դուրս վազեց ու տեսավ,
Որ փիսիկը պարտեզում
Նստած շուրթերն էր լիզում:
Ահա փիսիկն ու Նունեն
Ինչու իրար հետ չունեն;




ՌՈՒԲԵՆ ՂԱՐԻԲՅԱՆ

Նկ. ՀՈՎՀ. ՇԱՎԱՐՇԻ

— Տո՛կ-տո՛կ, տո՛կ-տո՛կ...
Տոտիկ, տոտիկ,
Ձվից ելավ մի լավ ճուտիկ,
Ելավ կանգնեց, հոնքը կիտեց,
Աչքի տակից շուրջը դիտեց:
Կյանքը նրան օտար թվաց,
Մի պահ տխրեց ու ծվծվաց.
— Ես հայր չունեմ,
Ես մայր չունեմ,
Ի՞նչ իմանամ
Ինչ թռչուն եմ.
Ի՞նչ իմանամ
Որտեղից եմ,
Ի՞նչ ազգից եմ,
Ի՞նչ ցեղից եմ...
Ո՞ւմ հետ ելնեմ,
Փողոց ու բակ,
Ո՞ւմ հետ անեմ
Խաղ ու կատակ...
Այդ ժամանակ ուրիշ մի ճուտ,
Որ ծնվել էր նրանից շուտ,
Նորելուկին մեղմիկ զգվեց,
Սիրեց, շոյեց ու սիրտ տվեց.
— Մի՛ լար, մի՛ լար, դեղնաթուշիկ,
Ոսկեկտուց իմ անուշիկ.
Ես կպատմեմ բոլորը քեզ,
Դու հարազատ իմ քույրիկն ես.
Մենք միասին,
Թե դու, թե՝ ես,
Հավածին ենք,
Ձվածին ենք.
Մենք ընտանի
Լավ թռչուն ենք,
Բակում անթիվ
Քույրեր ունենք.
Մեր մայրիկին այս լավ ու նոր,
Անվանում են ինկուբատոր:

# ՄԱՍՄԱՅԻ ՀԱՅՐԻԿԸ

Մ. ՎՇՏՈՒՆԻ

Վաղ առավոտից հայրիկը ոտքի վրա էր։ Նա այդ օրը մի ծանրաքարշ գնացք պիտի փոխադրեր։ Դրա համար էլ հագավ երկաթուղայինի համազգեստը, համբուրեց երեխաներին և ասաց.

— Դե՛, սիրելինե՛րս, ես նորից պետք է գնամ։ Չտխրեք, շուտով կվերադառնամ ու մենք միասին զբոսնելու կգնանք։

Շաֆիկը հասկացավ, որ հայրը հեռու տեղ էր գնալու և լացեց, իսկ Մասման լաց չեղավ. չէ՞ որ նա մեծ էր։

— Մեզ էլ տար քեզ հետ, հայրի՛կ,— խնդրեց Մասման։

— Դե լավ, եկեք կայարան, ինձ ճանապարհ դնելու,— համաձայնեց հայրը։

Նրանք կայարանին մոտ էին ապրում։

Գնացին ոտքով: Շաֆիկին գրկել էր հայրիկը, իսկ Մամման քայլում էր մոր ձեռքից բռնած: Երբ տեղ հասան, հայրիկն ասաց.

— Դուք նստեցեք այս ծառերի տակ, իսկ ես գնամ գնացքն ընդունելու:

Հիանալի էր կայարանն առավոտյան: Արևի պայծառ շողերը փռվել էին անվերջ ծխացող շոգեքարշերի կողերին: Գծերի վրա, ուղևորվելու պատրաստ, կանգնել էին մի քանի գնացք: Ամենուրեք տիրում էր կարգ ու կանոն:

Մի շոգեքարշ, ետ ու առաջ գնալով, եկավ ու միացավ վագոններին: Ինչե՜ր ասես, որ չկային այդ վագոններում. տեսակ-տեսակ շինանյութեր, մեքենաներ, հիդրոտուրբիններ, տրանսֆորմատորներ, էլեկտրական լարեր, ավտոդողեր...

Դա Մամմայի հայրիկի գնացքն էր: Երբ ամեն ինչ արդեն պատրաստ էր, հայրիկը մոտեցավ փոքրիկներին, համբուրեց և ասաց.

— Մամմա՛, սիրելիս, Շաֆիկին հսկիր, մայրիկին օգնիր, ես շուտով կվերադառնամ: Տեսնո՞ւմ ես, որքա՜ն շատ վագոններ են, բոլորն էլ լիքը, դեռ Մասիս կայարանում էլ քարերով բեռնված վագոններ պիտի կցեմ գնացքին և այդ բոլորը ժամանակին տեղ հասցնեմ: Ուշացնել չի կարելի, չէ՞ որ նորակառույցներում մարդիկ անհամբեր շինանյութի են սպասում:

Հայրիկը շատ բան էր ուզում ասել, բայց ժամանակ չկար: Փոքրիկները տեսան, թե ինչպես նա բարձրացավ շոգեքարշ և մտավ խցիկը: Կայարանի մեծ ժամացույցի սլաքները ինն անց քառասուն ցույց տվին: Գլխավոր կոնդուկտորը երկար սուլոցով ազդարարեց գնացքի մեկնելու մասին: Լսվեց մի ուժեղ սուլոց. դա Մամմայի հայրիկի շոգեքարշի սուլոցն էր: Նշանակում էր, որ շոգեքարշի անձնակազմը ուղևորվելու պատրաստ էր: Հսկա շոգեքարշը ծանր հևաց, մի սուր ճիչ արձակեց, գոլորշի բաց թողեց և սկսեց դանդաղ առաջ գնալ, հետզհետե արագացնելով ընթացքը: Մամման պարզ լսում էր հայրիկի շոգեքարշի ռիթմիկ աղմուկը, անվերջ պտտվող անիվների ձայնը՝ չակ-չո՛կ, չակ-չո՛կ...

Հայրիկը դուրս նայեց լուսամուտից և օդային համբույր ուղարկեց փոքրիկներին: Շաֆիկը տեսավ հայրիկին, բայց լաց չեղավ: Նա հասկացել էր, որ հայրիկը զբաղված է շատ կարևոր գործով ու նրան խանգարել չի կարելի:

Մամման թափահարեց ձեռքն ու ասաց.

— Բարի ճանապարհ, հայրի՜կ, բարի ճանապա՜րհ:

Այդ խոսքերը կրկնեց նաև Շաֆիկը: Կառամատույցում կանգնած մի խումբ պիոներներ նույնպես թափահարեցին ձեռքերը՝ «Բարի ճանապարհ, բարի ճանապարհ» ասելով:



Անվանի մեքենավար՝ Կաֆարով Կաֆար Ջաֆար օղլին իր շոգեքարշի մոտ:

...№ 791 ծանրաքարշ գնացքը, արագացնելով ընթացքը, առաջ սլացավ, իր հետև թողնելով Երևան կայարանը:

Ցաթման իր երկու փոքրիկների ձեռքից բռնած դեռ երկար ժամանակ նայում էր գնացքի հետևից: Նրանք անչափ հպարտ էին: Չէ՞ որ այդ գնացքը վարում էր իրենց հայրիկը՝ անվանի մեքենավար Կաֆարով Կաֆար Ջաֆար օղլին:




*Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

— Ա՛յ, ճչճչան առվակ,
Ո՞ւր ես վազում արագ.
Դո՞ւ ես բերել, ասա,
Ծաղկած գարունն այս տաք:
— Ես չեմ բերել գարուն,—
Ձայն տվեց ժիր առուն.—
Ծիծեռնակն է բերել
Մեր աշխարհին գարուն:
Ծիծեռնակը ասաց.
— Ոչ, սարյակն է բերել...
Սարյակը ծվծվաց.
— Հովն է գարուն բուրում,
Նա է գարուն բերում:
Հովիկը սվսվաց.
— Ծառն է բերել գարուն:
Այգում ու անտառում
Կանաչ լույս է վառել,
Կանաչ խարույկ դառել...
Ծառն էլ մեղմիկ շրշաց.
— Խոտն է բերել գարուն,
Նա է թավշով կանաչ
Աշխարհը զարդարում:
Խոտն էլ կամաց խշշաց.
— Ձնծաղիկն է բերել
Վառ գարունն էլ, ինձ էլ:
Իսկ վարդենին բացված
Քնքուշ ձայնով ասաց.
— Ա՛յ, ճչճչան առվակ,
Ա՛յ լրաբեր սարյակ,
Ա՛յ զեփյուռիկ թեթև,
Հովիկ մետաքսաթև,
Ա՛յ թուփ, ա՛յ կանաչ ծառ,
Դո՞ւք եք բերել միթե
Այս գարունը պայծառ:
Չհամբերեց Լենան.
— Ի՞նչ եք վիճում էլի:
Ամեն-մեկդ մենակ
Գարուն հո չեք բերի...
Դուք՝ բոլորդ եք մեկտեղ
Բացել գարուն շքեղ.
Ոսկի արևն էլ ձեզ
Գուրգուրել է մոր պես,
Տվել է գույն, երանգ,
Տվել է շունչ ու կյանք.
Նա է, նա է բերում
Ողջ աշխարհին գարուն:

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՉԵՄՊԻՈՆԸ

*Գ. ԱՌԱՔԵԼՅԱՆ*

Դասերն արդեն վերջացել էին: Մի խումբ տղաներ աշխույժ կատակելով դուրս եկան փողոց: Նրանք ինչ-որ տեղ էին շտապում: Նրանցից մեկը հանկարծ կանգ առավ և չորս կողմը նայելով բացականչեց.

— Սպասեցեք, իսկ ո՞ւր է Ալբերտը:

— Պարզ է՝ դարբնոցում, հոր մոտ...

Եվ խումբը վիճելով դիմեց դեպի քաղաքի բարձրադիր կողմում գտնվող դարբնոցը:

Դեռ հեռվից դարբնոցի վրա երևում էին թանձր, կապտագույն ծխի քուլաները: Աշխատանքն այնտեղ եռում էր:

— Լավ շիկացավ,— նայելով հնոցի կրակի մեջ թաղված երկաթի կտորին ասաց ծերունի դարբինը,— դե, Ալբերտ ջան, պատրաստվիր:

Պատանին թողեց փուքսի լծակը և արագորեն շուռ գալով վերցրեց ծանր մուրճը.

— Սկսենք, հայրի՛կ:

Ծերունին հմտորեն բռնեց շիկացած երկաթի ծայ-

րից և զգուշությամբ մոտեցրեց զնդանին: Ծանր մուրճն օդում շրջան գործելով իջավ շիկացած երկաթի վրա: Կայծերը չորս կողմ թռան: Ալբերտն ավելի ու ավելի հաճախ էր վեր բերում ծանր մուրճը: Կոր երկաթը գնալով տափականում էր: Քիչ անց հայր ու որդի արդեն երկրորդ դետալն էին պատրաստում: Հանկարծ դարբնոցը լցվեց ուրախ կանչերով:

— Կեցցե՛ս, Ալբե՛րտ,— միաբերան կանչեցին տղաները:

— Իսկ մարզումները հո չե՞ս մոռացել,— մոտենալով Ալբերտին ասաց Գրիշան:

— Ո՛չ, ես կարծում եմ, որ դարբնոցում աշխատելն էլ մարզում է,— ընկերոջն ընդհատեց մի սեվահեր տղա.— մի տես մկանները ինչպե՞ս են զարգացել, հապա՛:

Պատանիները հիացմունքով նայեցին Ալբերտի ուժեղ զարգացած կրծքին, ուսերի և թևերի մկաններին:

— Արդեն ժամանակն է, Ալբե՛րտ, սեկցիայի պարապմունքները շուտով կսկսվեն, գնանք,— ասաց Գրիշան:

Տղաների խումբն ուրախ կանչերով դուրս եկավ դեպի դպրոց տանող փողոցը: Դպրոցական մրցումներում Ալբերտ Ազարյանն հաջողության հասավ և գրավեց առաջին տեղը, բայց մրցակիցներն այստեղ այնքան էլ ուժեղ չէին: Ազարյանն էլ շարժումները դեռ չէր կարողանում սահուն կատարել:

Եվ ահա մի օր, երբ սովորական ճանապարհով Ալբերտը ընկերների հետ տուն էր վերադառնում, նրա ուշադրությունը գրավեց փողոցի անկյունում դրված հայտարարության մեծ տախտակը՝ «Վաղը Կիրովականում ելույթ կունենան ռեսպուբլիկայի ուժեղ մարմնամարզիկները»...

— Հը՞, տղանե՛ր, չգնա՞նք:

— Գնանք,— գոչեցին տղաները:

* * *

Դահլիճի մի անկյունում նստած էին Ալբերտն ու իր ընկերները: Նրանք լարված հետևում էին մարմնամարզական տարբեր գործիքների վրա վարժություն կատարող սպորտսմեններին:

Ելույթներն ավարտվեցին, հանդիսականները դանդաղ քայլերով դուրս էին գալիս դահլիճից:

— Տղանե՛ր, փորձենք, հը՞:

Եվ Ալբերտն արագ հանեց վերնաշապիկը և մի թռիչքով հայտնվեց զուգափայտի մոտ: Եվս մի ակնթարթ, և նա արդեն գործիքի վրա էր:

Ալբերտն սկսեց կատարել տեսած վարժությունները: Ճիշտ է, դրանք կոպիտ էին և մեծ մասամբ անհաջող, միայն ուժի շնորհիվ կատարված, բայց պատանին չէր հոգնում և իրար հետևից մի քանի անգամ հրաշալի կերպով կանգնեց ձեռքերի վրա:

— Ո՞վ է այդ պատանին,— մոտենալով տղաներին հարցրեց ռեսպուբլիկայի լավագույն մարզիչներից մեկը՝ Սյոմա Կարագյոզյանը:

— Ալբերտն է, Ազարյան Ալբերտը, № 6 դպրոցից,— պատասխանեց Ալբերտի ընկերներից մեկը:

Այս բոլորը տեղի ունեցավ 1948 թվականի աշնանը:

Հաջորդ տարվա ձմեռային արձակուրդների ժամանակ Ալբերտ Ազարյանին Երևան կանչեցին:

— Կսկսես պարապել,— ձեռքը մտերմաբար դնելով տղայի ուսին ասաց մարզիչ Կարագյոզյանը,— դու տվյալներ ունես. երևի դպրոցում էլ ես պարապել. այստեղ կկատարելագործենք:

Մարզումներն սկսվեցին: Ալբերտը միշտ ուշադիր էր, լսում էր մարզիչին, ընկերներին, մի վարժություն կրկնում էր մի քանի անգամ, մինչև որ ստացվում էր:

Տասնհինգ օրվա ընթացքում պատանին այնքան առաջադիմեց, որ մարզիչները որոշեցին նրան մտցնել ռեսպուբլիկայի հավաքական թիմի մեջ: Թիմը մեկնելու էր Համամիութենական մրցումների:



*Ալբերտ Ազարյանը պարապմունքի ժամին:*

Եվ ահա նա Լենինգրադումն է: Ընկերների հետ քայլում է գետափնյա փողոցով, Նևսկի պողոտայով: Ինչքա՜ն են իրենք երազել այդ քաղաքի մասին: Հենց Լենինգրադումն էլ Ալբերտն առաջին անգամ տեսավ Միության ամենաուժեղ մարմնամարզիկներին:

Լենինգրադում Ալբերտ Ազարյանը հաջողություն չունեցավ, քիչ էր մարզվել:

Անցան ամիսներ: Ալբերտ Ազարյանին միշտ կա-

րելի էր հանդիպել դասերը պատրաստելիս կամ սպորտային դահլիճում: Մարզումները շարունակվում էին:

1950 թվականին Համամիութենական մրցումներում նա ՍՍՌՄ սպորտի վարպետի կոչում նվաճեց, իսկ երկու տարի հետո արդեն Միության ուժեղագույն մարմնամարզիկների հետ սպորտային պայքարի էր դուրս եկել ՍՍՌՄ չեմպիոնի ոսկե մեդալը նվաճելու համար: Երբ Ալբերտն արդեն մոտենում էր գործիքին, Հրանտ Շահինյանը ամուր սեղմելով նրա ձեռքն ասաց.

— Կհաղթես, պե՛տք է հաղթես:

Ազարյանն սկսում է վարժությունը: Դահլիճում հավաքվածները լուռ հետևում են նրա ամեն մի շարժմանը: Ահա և վարժության վերջը: Ալբերտը հանգիստ թողնում է օղակներն ու թռիչք գործելով վայր իջնում: Գնահատականը 9,6 է:

Սպորտի երիտասարդ վարպետ Ալբերտ Ազարյանը հաղթանակով է դուրս գալիս աշխարհի ուժեղագույն մարմնամարզիկ Վիկտոր Չուկարինի հետ ունեցած սպորտային պայքարից: Նա դառնում է Սովետական Միության չեմպիոնը:

***

Ամենուրեք մեծ աֆիշաների վրա խոշոր տառերով գրված են՝ «Սովետական մարմնամարզիկների ելույթները Բեռլինում»: Հսկա դահլիճում մեկը մյուսի հետևից ելույթ են ունենում Չուկարինը, Մուրատովը, Ազարյանը: Բեռլինցիները ջերմորեն են ընդունում սովետական մարմնամարզիկներին:

... Ավարտվում է Ազարյանի ելույթը: Բեմին են մոտենում մի խումբ ուսանողներ և հսկա ծաղկեփունջ նվիրում նրան:

— Շահինյա՞ն,— հարցնում է մի բխաղեմ աղջիկ:

Աղջիկը հավանորեն լսել էր Շահինյանի մասին և կարծել էր, թե այդ թուխ մազերով ու սև աչքերով կովկասցին հենց ինքը՝ Շահինյանն է:

— Ոչ, ես Շահինյանը չեմ, ես նրա աշակերտն եմ, — ժպտալով ռուսերեն պատասխանում է Ազարյանը:

Բարձրախոսներն իսկույն հաղորդում են նրա ասածը: Դահլիճը նոր ուժով է ծափահարում համեստ պատանուն:

Սովետական սպորտսմեններն այնուհետև ելույթներ են ունենում Լայպցիգում և Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի այլ քաղաքներում: Ամենուրեք ջերմ, հուզիչ հանդիպումներ, ամենուրեք զգացվում է գերմանացի պատանիների ու աղջիկների սերը սովետական փառապանծ երիտասարդության նկատմամբ:

Սովետական սպորտային դելեգացիայի կազմում Ալբերտ Ազարյանը մասնակցել է նաև աշխարհի երիտասարդության Բուխարեստի ֆեստիվալին: Եղել է Չինաստանում, Ֆրանսիայում: Եվ ամենուրեք նա բարձր է պահել սովետական սպորտի պատիվը:

# ԵՐԲ ՑՆՑՎՈՒՄ Է ԳԵՏԻՆԸ

*Թ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ*
*(Գեոլոգիական գիտությունների թեկնածու)*

*Սովորաբար մեզ թվում է, թե գետինը կամ ինչպես գիտնականներն են ասում, երկրակեղևը անշարժ է. բայց դա, իհարկե, ճիշտ չէ: Երկրագնդի 10—20 կիլոմետր հաստություն ունեցող արտաքին պատյանը՝ երկրակեղևը անընդհատ շարժման մեջ է: Նա շարունակ դողում է, դանդաղ իջնում կամ բարձրանում: Այդ շարժումների մեծ մասը շատ թույլ են և մենք չենք զգում, իսկ կենդանիներն ու թռչունները զգում են:*

*Հատուկ նուրբ սարքավորումները՝ սեյսմոգրաֆները ցույց են տալիս, որ մի օրվա ընթացքում աշխարհում մի քանի տասնյակ թույլ երկրաշարժ է լինում: Տարեկան մի քանի անգամ տեղի են ունենում ուժեղ երկրաշարժեր ու հսկայական վնասներ պատճառում ժողովրդական տնտեսությանը:*

*1911 թվականի հունվարի 4-ին տեղի ունեցավ Վերնիի (այժմ Ալմա-Աթա) քաղաքի ահավոր երկրաշարժը: Քաղաքի մերձավոր լեռներում փլուզումներն հսկայական չափերի հասան: Թեք լանջերից հողի ու քարի հսկայական զանգվածներ փլվելով ու ավերելով անտառը, լցվում էին ձորերը, արգելակում գետը և լճեր առաջացնում: Հետո այդ լճերից հորդում էին ցեխի վիթխարի հեղեղներ, որոնք ծածկում էին այգիները, դաշտերը, ճանապարհները և տները: Մի ականատես այդ երկրաշարժի մասին թողել է հետևյալ նկարագրությունը:*

*«Մոտակա լեռներից լսվում էին խուլ ու ճնշող ձայներ: Տները ճռճռում էին ու կոտրվում: Մարդիկ*



Բնակավայրի ավերումը երկրաշարժից:

հավասարակշռությունը կորցրած ընկնում էին ու բարձրանալով փախչում՝ ուր պատահեր։ Տարօրինակ աղմուկով քանդվում էին տները։ Անկանոն զրնգում էին զանգերը։ Ահաբեկված կենդանիները այս ու այն կողմ փախչելով՝ սաստկացնում էին մարդկային խուճապը։ Բազմահարկ տները ճզմվում էին ստվարաթղթից շինված տուփերի պես, վերածվում ծխացող ավերակների ու աղբակույտերի»։

Նույն տարին Պամիրի երկրաշարժի ժամանակ փլվեց ութ միլիարդ տոննա քար ու հող և գետի առաջն առնելով առաջացրեց 60 կիլոմետր երկարություն ունեցող, Սևանա լճի պես մի լիճ։ Այդպիսի օրինակներ շատ կարելի է թվել։

1923 թվականին Յապոնիայում Տոկիո և Իոկոհամա քաղաքներում երկրաշարժից զոհվեց 142.807 մարդ և վիրավորվեց 100.000 մարդ։ Քանդվեց մոտավորապես 702.500 տուն։ Այդ նույն ժամանակ Սագամի ծովածոցի հատակը երկու հարյուր մետր իջավ։

Մարդիկ դեռևս շատ վաղ ժամանակներից փորձել են իմանալ երկրաշարժի պատճառը։ Հնում հոգևորականներն ասում էին, թե երկիրը գտնվում է փղի մեջքին, իսկ փիղն էլ կանգնած է մի հսկայական կրիայի վրա։ Երբ փիղն ու կրիան շարժվում են, երկրաշարժ է լինում։ Այդ բացատրությունները խելոք մարդկանց չէին կարող համոզել։

1888 թվականին ռուս գիտնական Ա. Պ. Օռլովը երկրաշարժերն ու նրանց պատճառները բաժանեց երեք խմբի։

1. Նեպտունական երկրաշարժեր, որոնք առաջանում են ստորերկրյա դատարկությունների առաստաղի կամ պատերի փլման հետևանքով։ Այսպիսի երկրաշարժերը թույլ են և հազվադեպ։

2. Հրաբուխներից առաջացող երկրաշարժեր։ Սրանք նույնպես մեծ տարածում չունեն։

3. Տեկտոնական երկրաշարժեր։ Սրանք ամենատարածված ու ամենաուժեղ երկրաշարժերն են։ Սրանց պատճառը երկրի կեղևում տեղի ունեցող հանկարծակի տեղափոխումներն են։ Այդ շարժումները կոչվում են լեռնակազմական պրոցեսներ։

Այնպես է պատահում, որ երկրի վրա առաջանում է մի հսկայական ճեղք, որի մի կողմում գետինը բարձրանում է, իսկ մյուս կողմում՝ իջնում մի քանի մետրով։

Յապոնիայում 1891 թվականի երկրաշարժի ժամանակ Նեո գետի հովտում առաջացավ 100 կիլոմետրանոց մի ճեղք, որի մի կողմում գետինը 20 մետր իջավ։ Պարզ է, որ այդպիսի տեղափոխումից կործանիչ երկրաշարժ կառաջանա։

Երկրաշարժերն ամենուրեք միատեսակ չեն լինում։ Տարբեր երկրներում նրանք լինում են տարբեր ուժի և տարբեր քանակությամբ։

1885—1892 թվականներին, այսինքն յոթ տարում, Յապոնիայում եղել է 8331 երկրաշարժ, այսինքն օրական երեք անգամ։ 1868 թվականին Հավայան կղզիներում միայն մարտ ամսին տեղի է ունեցել 2000 երկրաշարժ։

Երկրաշարժեր շատ են լինում նաև Հարավային Ամերիկայում, Միջին Ասիայում, Պամիրում, Կովկասում, Անդրկովկասում, Ղրիմում, Փոքր Ասիայում և մյուս լեռնային երկրներում։

Ամենաուժեղ երկրաշարժերի գոտին սկսվում է Հյուսիսային Աֆրիկայից և անցնում Միջերկրական ծովի կղզիների վրայով դեպի Արաբիա։ Այնուհետև դեպի Հնդկաստան, Հնդկաչին, Ճապոնյան կղզիներ



Իտալական Մեսինա քաղաքի ավերումը 1908 թ. երկրաշարժից:

մինչև Պանամայի պարանոցը և Ատլանտյան օվկիանոսի վրայով նորից դեպի Միջերկրական ծով։ Երկրաշարժերն ուժեղ են նաև Ալպերում, Հիմալայում, Անդերում և այլ տեղերում։

Կան վայրեր էլ, որտեղ երկրաշարժեր գրեթե չեն լինում, կամ շատ թույլ են լինում. օրինակ՝ միջին Գերմանիայում, Ուրալում, Արևմտյան Սիբիրում, Ռուսական հարթավայրում։

Երկրաշարժը մեծ չարիք է ժողովրդի համար։ Սովետական գիտնականները, երկրաբաններն ու սեյսմոլոգները նրանից պաշտպանվելու միջոցներ են որոնում։ Դրա համար կազմում են երկրաշարժերի տարածման վայրերի քարտեզներ, նախատեսնում են, թե որտեղ ինչ ուժի երկրաշարժեր կարող են լինել։ Այնտեղ, ուր ուժեղ երկրաշարժեր են սպասվում, կառուցվում են հատուկ ամրության, կամ ոչ բազմահարկ շենքեր։

Այժմ մեր գիտնականներն աշխատում են խորն ուսումնասիրել երկրաշարժերը և կանխատեսել դրանք։ Սովետական առաջավոր գիտությունը համոզված է, որ կգա մի օր, երբ մարդիկ բարդ գործիքներով զինված կկանխատեսեն երկրաշարժը և կխուսափեն ահավոր աղետներից։

# ԳՐՔԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻ ԳՐՔԵՐԸ

Օրորոցում պառկած է երեխան: Նրա մոտ նստած է մայրը: Նա մեղմիկ օրոր է ասում, որպեսզի փոքրիկը քնի խաղաղ ու հանգիստ.

*Ա՛յ իմ բալիկ կարմրաթուշիկ,*
*Փակիր մեղմիկ աչքդ նուշիկ,*
*Օրո՜ր ասեմ ես քեզ հուշիկ,*
*Ննջիր խաղաղ, իմ անուշիկ։*

Աշխարհի բոլոր մայրերը ցանկանում են, որ իրենց երեխաների քունը հանգիստ լինի, երջանիկ կյանք ունենան նրանք: «Մայրական խոսք» ոտանավորով է սկսվում սովետահայ նշանավոր բանաստեղծ Ազատ Վշտունու «Մանկության օրեր» վերնագրով գրքույկը:

Մի ուրիշ՝ «Թրռ արա» ոտանավորում, մայրը երեխային վեր է թռցնում և ցանկանում, որ նա շուտ մեծանա, հասակ առնի, ամրանա, հայրենիքին պիտանի քաջ մարտիկ դառնա: «Լուսաբացը» ոտանավորում տրված է հայրենի բնության գեղեցկությունը: Ծագում է արևը, իր ոսկե շողերը սփռելով լեռների ու դաշտերի, ծաղիկների ու խոտերի վրա: Գառներն ու ուլերը մեղմ մայելով հոտի հետ միասին բարձրանում են դեպի կանաչ լեռները: Ազատ Վշտունին խորհուրդ է տալիս երեխաներին մարզանք անել, լողալ, ճամբար գնալ, կոփել մարմինը, որ նոր թափով, թարմացած ու առողջացած վերադառնան դպրոց՝ գիտություն ձեռք բերելու:

Լավ են գրված նաև «Ուլիկը», «Իմ քույրիկը», «Լավիկն ես դու» և այլ ոտանավորներ:

«Մանկության օրեր» գրքույկը երեխաների մեջ սեր է արթնացնում դեպի մեր մեծ Հայրենիքը, նրա գեղեցիկ բնությունը, սովորեցնում է մանկուց լինել կարգապահ, մաքրասեր, խելոք: Գիրքը գեղեցիկ նկարազարդել է նկարիչ Ան. Գասպարյանը:

***

Լույս է տեսել Շահեն Թաթիկյանի «Ընտանիք» գրույցների ու պատմվածքների ժողովածուն: Հեղինակն իր գրքում նկարագրում է պիոներներին ու դպրոցականներին՝ տանը, փողոցում և դպրոցում:

Ահա «Շտապիկ» պատմվածքի հերոսը՝ Ցոլակը: Նա միշտ անտեղի շտապում է: Դրա համար էլ նրան Շտապիկ ավելորդ անունն են տվել: Ցոլակը ծույլ աշակերտ է: Նա ամբողջ ուսումնական տարվա ընթացքում ոչինչ չի արել, չի սովորել օրվա դասերը, իզուր տեղը վատնել է ժամանակը: Այժմ, երբ մոտեցել են քննությունները, պարապելու փոխարեն, անընդհատ վազվզում է, խաղ անում: Տանը նրան երես են տվել: Դասատուների հանձնարարած խնդիրներն ու վարժությունները վճռել են հայրն ու մայրը: Եվ Ցոլակն ավելի է ծուլացել: Քիչ ժամանակ է մնացել մինչև աշխարհագրության քննությունը: Նա որոշում է պարապել. բայց պարզվում է, որ ոչինչ չգիտի և մեկ-երկու օրվա ընթացքում անհնար է ամբողջ տարվա նյութը սովորել: Երբ սկսում է կրկնել, ամեն ինչ խառնվում է նրա ուղեղում:

Թաթիկյանը ցույց է տալիս, որ Ցոլակի ընկերներն ընդհակառակը, ամեն բան անում են օրվա ռեժիմով: Դրա համար է, որ նրանք քննությունների ժամանակ նույնիսկ հանգստանալու և խաղալու ժամանակ են գտնում:

Ահա և «Ընտանիք» պատմվածքի հերոսուհի Ծովիկը: Համառ աշխատանքի միջոցով նա դարձել է առաջավոր աշակերտուհի. բայց դեռևս մի բացասական գիծ ունի նա. առանց ամաչելու, գնահատականի համար վիճում է դասատուների հետ: Դա դուր չի գալիս ընկերներին: Նրանք Ծովիկից երես են դարձնում, որպեսզի նա հասկանա իր սխալը և ներողություն խնդրի: Աստիճանաբար Ծովիկն զգում է իր սխալը և ուղղվում:

Հեղինակը ցույց է տալիս, որ Ծովիկը ընկերների շրջապատից, կոլեկտիվից դուրս մենակ է, անօգնական: Ընկերներն են, որ միշտ նրան կարող են դուրս բերել դժվար դրությունից: Ցոլակի և Ծովիկի նման պիոներներ դեռ կան: Եվ նրանց իրենց սխալի վրա պետք է ցույց տալ, որ այդպես չի կարելի շարունակել: Ծուլությունը, մեծամտությունը, անկարգությունը վնասում է դպրոցականին:

Լավ են գրված «Ինչպես Արայիկը բուժեց Լեփիկին», «Հրաչիկն ու իր ընկերները» և ուրիշ պատմվածքներ ու գրույցներ: Երեխաները պետք է կարդան այս գիրքը և սովորեն նմանվել աշխատասեր, խելոք ու կարգապահ պիոներներին:

«Ընտանիքը» ձևավորել է նկարիչ Ս. Ստեփանյանը:

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

## ՁԱՅՆՎՈՐԴ



1. Անտառի բրդոտ բնակիչ. 2. Անապատի հսկա թռչուն 3. Տընային ամենափոքրիկ կենդանի. 4. Արևադարձային անտառների ճարպիկ, խորամանկ և արագաշարժ կենդանի. 5. Ավստրալիական պարկավոր խոշոր կենդանի. 6. Նորածին այծ. 7. Վագրի տիպի գիշատիչ կենդանի. 8. Մեզ բոլորիս ծանոթ շնիկը. 9. Ընտանի կաթնասուն կենդանի. 10. Վայրի խոզ. 11. Ձի. 12. Հայաստանում տարածված թանկարժեք մորթի ունեցող կենդանի. 13. Ընտանի թռչունի մի տեսակ. 14. Ընտանի խոշոր կաթնասուն. 15. Տների արթուն պահակ. 16. Առաջատար ուղտ. 17. Աֆրիկական մեծ կենդանի, որի քթին եղջյուր կա։

Կազմեց՝ Մ. ՄԱԴԱԹՅԱՆ

## ԿԱՐՈ՞Ղ ԵՍ ԱՍԵԼ



1. Ինչո՞ւ նավերը, ննղունավերը և մի քանի այլ թռչուններ փոքրիկ քարեր են կուլ տալիս։

2. Ի՞նչն է պատճառը, որ երբ ձին վախենում է, սկսում է փռնչացնել։

3. Ինչո՞ւ բուի թռիչքի ժամանակ աղմուկ չի լսվում։

4. Բադերը և սագերը ջրից դուրս են գալիս «չոր», ինչո՞ւ։

5. Ձկները կարող են շնչել միայն ջրի մեջ լուծված թթվածինը, ինչո՞ւ։

6. Ինչո՞վ բացատրել, որ կատվի աչքերը գիշերը փայլում են։



## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

Այն ի՞նչն է արագ
Գալիս ու գնում,
Սակայն շարունակ
Իր տեղն է մնում:

---

Իրար նման երկու քույր,
Իսկ մեջտեղը՝ մի բլուր:

*Մ. ԿՈՐՅՈՒՆ*

## ՃԻՇՏ ՊԱՏԱՍԽԱՆԵԼ ԵՆ

*Մեր ամսագրի 1954 թվականի № 1-ում տպագրված «Հետաքրքիր ժամանցի» պատասխաններն են.*

*1. Կրիպտոգրամա.— «Շնորհավոր ձեր նոր տարին, երեխաներ. «Պիոներ» ամսագիր»:*

*2. Ի՞նչ է գրել Անահիտը. Անահիտը չմուշկներով գրել է՝ «Սիրեցեք սպորտը»:*

*3. Ընձուղտի, թե՞ մկան: Երկու կենդանիների պարանոցի ողերն էլ նույն քանակությունն ունեն:*

Ճիշտ պատասխանել են.

*Յու. Բարաջանյանը, Վ. Հովհաննիսյանը, Հ. Թորգոմյանը, Ռ. Միրզոյանը, Հ. Մուրադյանը, Լ. Գրիգորյանը (Երևան), Ա. Բզնունին (Կիրովական), Ջ. Մինասյանը (Լենինական), Ֆ. Ավետիսյանը (Ախուրյան), Ա. Հովհաննիսյանը (Ղափան), Ս. Սիրադեղյանը, Ռ. Ջալինյանը (Ալավերդի), Հ. Ավագյանը (Կրասնոսելսկ), Ռ. Ճշմարիտյանը (Ստեփանավան), Ա. Կուրղինյանը (Թալին), Տ. Ղոչիկյանը, Ե. Միրզոյանը (Սպիտակավան) և ուրիշներ:*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ, չորրորդ էջը՝ նկ. Մ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ:




*Խմբագիր՝* ՏԱԼՅԱՆ Վ.

*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, Հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 09505: Պատվեր 201: Տիրաժ 5000: Տպագրական 2½ մամուլ: Ստորագրված է տպագրության 8/III— 1954 թ.*

*Հայպոլիգրաֆհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող. № 65:*

# ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ

### Յակով Սվերդլով

Լրտեսները ու ոստիկանները ձեռ ու ոտ էին ընկել: Նրանք փնտրում էին «Ընկեր Անդրեյին»: Ցարական ոստիկանությունը նրա գլխի համար հինգ հազար ռուբլի պարգև էր խոստացել:

Դա 1905—1906 թվականներին էր: «Ընկեր Անդրեյ» ծածկանունով Ուրալում գործում էր Յակով Միխայլովիչ Սվերդլովը: Պարտիայի Կենտկոմի և ընկեր Լենինի հանձնարարությամբ նա Ուրալում բոլշևիկյան մարզային կազմակերպություն էր



ստեղծում: Ռևոլյուցիոն աշխատանք Յակով Սվերդլովն սկսել էր ավելի վաղ, դեռևս իր ծննդավայր Նիժնի Նովգորոդ (այժմ՝ Գորկի) քաղաքում 1901 թվականին: Ուրալում նա արդեն պրոֆեսիոնալ, ճանաչված ռևոլյուցիոներ էր: Չնայած ցարական ժանդարմների և ոստիկանության հետապնդումներին, Յակով Սվերդլովը կարողացավ պարտիայի Կենտկոմի առաջադրած խնդիրները կատարել:

Սվերդլովը Վլադիմիր Իլյիչ Լենինի մերձավոր զինակիցն էր, մեր պարտիայի աչքի ընկնող գործիչներից մեկը: Մինչև 1917 թվականը Յակով Միխայլովիչը ընդհատակյա աշխատանքի մեծ փորձ ձեռք բերեց: 1917 թվականի ապրիլից նա պարտիայի Կենտկոմի քարտուղար էր, Հոկտեմբերյան ռևոլյուցիայի կազմակերպիչներից ու ղեկավարներից մեկը:

Սովետական իշխանության հաստատման առաջին իսկ օրերին Սվերդլովը նշանակվեց Համամիութենական Կենտգործկոմի նախագահ:

Յակով Սվերդլովը մեռավ 1919 թվականի մարտին: Նրա մահը մեծ կորուստ էր մեր պարտիայի համար:

### Սերգեյ Լազո

1918 թվականի հունվարին, Մանջուրիայից Անդրբայկալյան երկրամաս խուժեցին սպիտակ գվարդիական կազակները: Նրանց գլուխն էր կանգնած յապոնական լրտես Սեմյոնովը: Անդրբայկալի բոլշևիկները դուրս եկան հակահարված տալու նրանց: Այդ օրերին Սիբիրի Կենտգործկոմը անդրբայկալյան ռազմա-



ճակատի հրամանատար նշանակեց Սերգեյ Լազոյին: Առաջին իսկ ճակատամարտում սեմյոնովականները ծանր պարտություն կրեցին և փախան Մանջուրիա:

Այդ ժամանակ Սովետական երիտասարդ ռեսպուբլիկայի վրա զանազան կողմերից հարձակվեցին կապիտալիստական երկրները: Չեխոսլովակյան խռովարարների կորպուսը գրավեց սիբիրյան երկաթուղին և դրանով Հեռավոր Արևելքը կտրեց Սովետական Ռուսաստանից: Կարմիր գվարդիականներն անցան պարտիզանական պայքարի: Նրանց հետ էր նաև Սերգեյ Լազոն: 1919 թվականին նա Վլադիվոստոկի կոմիտեի հանձնարարությամբ յապոնացիների և սպիտակ գվարդիականների դեմ ժողովրդական ապստամբություն կազմակերպեց: Յապոնական լրտեսներին միայն խաբեբայությամբ հաջողվեց բռնել Սերգեյ Լազոյին:

Ապրիլի 5-ին յապոնական սամուրայները Սերգեյ Լազոյին իր երկու ընկերների հետ գազանաբար այրեցին շոգեքարշի հնոցում:

Սերգեյ Լազոյի հիշատակը միշտ պայծառ կմնա ժողովրդի սրտում:

### Տարաս Շևչենկո

Պետերբուրգի լույս գիշերներին մի պատանի Ամառային այգում նստած նկարում էր: Այդ տղան գրավեց ուկրաինական նկարիչ Սոշենկոյի ուշադրությունը: Սոշենկոյի միջոցով պատանին ծանոթացավ ռուս ականավոր նկարիչներ Բրյուլովի, Վենեցիանովի և ուրիշների հետ: Նա ճորտ էր:

Այդ պատանին ուկրաինական հանճարեղ բանաստեղծ Տարաս Շևչենկոն էր: Բրյուլովը նկարեց բանաստեղծ Ժուկովսկու հրաշալի պորտրեն: Վիճակախաղում պորտրեն շահեց 2500 ռուբլի և այդ փողով 1838 թվականին գնեցին Շևչենկոյի ազատությունը:



Տարաս Գրիգորևիչ Շևչենկոն ռուս բարեկամների օգնությամբ ավարտեց նկարչական ակադեմիան, բայց նրա բանաստեղծի համբավն ավելի շուտ տարածվեց: 1840 թվականին լույս տեսած նրա «Կոբզար» ժողովածուն ձեռքից ձեռք էր անցնում: Այդ գրքույկով բանաստեղծն առաջին անգամ դիմեց իր ժողովրդին ժողովրդական պատկերավոր ու հյութեղ լեզվով: Նա հիշում էր, թե ինչպես իր հայրենի Ուկրաինայում հազարավոր ժողովուրդը տառապում է ճորտատիրական լծի տակ և իր քնարով պայքարի էր կոչում նրան: Ցարական կառավարությունը Շևչենկոյին ենթարկում էր հալածանքների: Նրան տաս տարի պահեցին աքսորավայրում և արգելեցին գրել ու նկարել:

Միայն Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայից հետո բանաստեղծի մեծարումը վերածվեց մեծ տոնակատարության:

Մարտի 9-ին լրացավ մեծ բանաստեղծի ծննդյան 140 տարին:

